Երկրորդ ընդհատումը եղաւ Էնկիւրիի մէջ, հետեւեալ պատճառով. — Ռուսերը կ՚ուզեն որ իրենք որոշեն թէ Ռուսիայէն ինչ տեսակ նիւթեր եւ որ քանակութեամբ պիտի բերուին Թուրքիա։

Ռուս առեւտրական ներկայացուցիչը քանի մը օրէն Մոսկուա պիտի երթայ։

## Գերմանիոյ տագնապը

ՊԵՐԼԻՆ, 1 դեկտ.— Նախագահ Հինտէնպուրկ ունկնդրութեան ընդունեց վարչապետ Պրիւնինկը որ անոր հաղորդեց նախարարաց խորհուրդի որոշումները, ելմտական-տնտեսական բարեկարգումներու ծրագրին՝ հրովարտակներով գործադրութեան մասին։ Նախագահը այդ ուղղութեամբ իրաւասութիւն տուաւ վարչապետին։ Հրովարտակները գործադրութեան պիտի դրուին վաղուընէ։

Գերմանիոյ խորհրդարանը որ երկու օր վերջ պիտի հրաւիրուի, պիտի գտնուի կատարուած իրողութեան առջեւ։ Ելմըտական ծրագիրը իր օրակարգին վրայ չկայ. հետեւաբար անմիջապէս պարտաւոր պիտի ըլլայ զբաղելու 1931ի ելմտացոյցով։ Բացայայտ է սակայն թէ, այսառաջին իսկ նիստէն, Հիդլերեաններն ու ազգայնականները բանաձեւեր պիտի ներկայացնեն հրովարտակներու վերացման համար։ Եթէ վստահութեան քուէի հարց ծագի, հաւանաբար ընկերվարականները չպիտի ուզեն Պրիւնինկի տապալման պատասխանատուութիւնըստանձնել Գերմանիոյ այս ճգնաժամային պահուն, ու պիտի քուէարկեն ի նպաստ դահլիճին։

## Համահնդկական Խորհրդաժողովը

Լոնտոնի համահնդկական խորհրդաժողովին այն յանձնախումբը որ պաշտօն ստանձնած է ուսումնասիրել Հնդկաստանի մէջ դաշնակցային պետութեան մը ծրագրին կիրարկման պայմաններն ու եղանակները, հաւաքուեցաւ քննելու համար յատուկ յանձնախումբի մըկողմէ ներկայացուցած տեղեկագիրը։

Առաջարկ եղած է Գերմանեան բաժնել Հնդկաստանէն, զայն օժտելով անջատ կառավարութեամբ մը։ Հնդկաստանի կառավարութիւնը կարգ մը առարկութիւններ կ՚ընէ Պիրմանիոյ բաժանման դէմ. բայց Սիմոնի տեղեկագիրը ի նպաստ Պիրմանիոյ բաժանման կ՚արտայայտուի։

Տէլհիէն տրուած հեռագրի մը համաձայն Հնդկաստանի կեդրոնական եւ նահանգային կառավարութիւնները որոշած են Լոնտոնի խորհրդաժողովին ներկայացնել նոր յիշատակագիր մը հնդկական դաշնակցութեան ծրագրին մասին, որ ներկայիս կ՚ուսումնասիրուի յատուկ յանձնախումբին կողմէ։ Այս յիշատակագրին հրատարակումը պատճառ պիտի ըլլայ կը կարծուի, որ համահնդկական խորհրդաժողովը դեկտ. 15էն յետաձգուի յառաջիկայ յունիսին։

## Աֆղանիստանի խռովութիւնները

Պոմպէյէն տրուած տեղեկութեանց համաձայն, կը հաստատուի թէ ի նպաստ Ամանուլլահի կրկին գահակալութեան, շարժում մը ծայր տուած է։ Իմացուած է որ Տուրրանի ցեղախումբէն 15 երեւելիներ, որոնց ուժ կուտան զանազան ցեղախումբեր, ներկայացած են Նատիր Խանի եւ բացէ ի բաց անոր յայտնած են թէ իր իշխանութիւնը հաճելի չէ ժողովուրդին։ Պահանջ դրած են որ հրաժարի գահէն, զայն յանձնելու համար Ամանուլլահի, եւ այդ կերպով առաջքն առնելու համար արիւնահեղութեան։ Նատիր Խանի պատասխանը յայտնի չէ։

Անգլիական իշխանութիւնները ուշի ուշով կը հետեւին Աֆղանիստանի անցուդարձերուն։





## Հ. Յ. Դ.

Գ Ա Ի Ա Ռ

ԼԻՈՆԻ Կայծակ խումբի ժողովը այսօր Չորեքշաբթի իրիկուն ժամը 8.30ին Հ. Յ. Դ. Գրադարանը։

ՄԱՐՍԷՅԼԻ «Ռոստոմ» ենթակոմիտէն ժողովի կը հրաւիրէ Զարզարեան, Ա. Գարօ, Բեռի, Գէորգ Չաւուշ եւ Քրիս խումբերու բոլոր ընկերները, այս Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին, սովորական հաւաքատեղին մէջ։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է։ Կարեւոր օրակարգ։

## ՑՈՒՇԱՏԵՏՐ

Զ. Ե. Ռ. Միութեան Փարիզի մասնաճիւղին դասախօսական ժողովը վաղը Հինգշաբթի իրիկուն ժամը 9ին Ֆլորիայի մէջ։ Կը խօսի Պ. Ղեւոնդ Մելոյեան Քուչակի սիրոյ երգերուն մասին։ Մէկ ժամ սինէմա։

ՌՈՍՏՈՄ Գրադարանի վարչութենէն ստիպողաբար կը խնդրուի հանդիպիլ «Յառաջ»ի խմբագրատունը։

ԱԼՖՈՐՎԻԼԻ Հ. Մ. Ը. Մ.ի մասնաճիւղի հանդէսը որ տեղի պիտի ունենար Դեկտ. 7ին, յետաձգուած է անորոշ ժամանակով։ Տոմսերը կը պահեն իրենց արժէքը։

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— կը փնտռուի Շապին Գարահիսարցի տիկին Պայծառ Քէօրիւքճեան (ծնեալ Սամուէլեան) որ մօտ ամիս առաջ Պոլսոյէն եկած է Փարիզ իր փոքրիկ աղջկան Մարգրիտի հետ։ Շապին Գարահիսարի Հայր. Միութենէն եւ հայրենակիցներէ կը խնդրուի իմացնել իր ամուսնոյն Keurukdjian Haroutiounի, 9 Rue du Pas St. Georges, Bordeaux, Gironde.

Լուր տուողին 100 ֆր. նուէր։ Տիկին Պայծառէ կը խնդրուի ներկայանալ «Յառաջ»ի խմբագրատունը։

Տէր եւ Տիկին Աւետիս Աբրահամեան, Տէր եւ Տիկին Յակոբ Ուզունեան եւ իրենց պարագաները սրտի խորունկ կսկիծով կը ծանուցանեն իրենց մօր, զոքանչին եւ ազգականին

ՀԱՃԻ ՖԼՈՌ ԱԲՐԱՀԱՄԵԱՆԻ

դառնաղէտ մահը՝ որ տեղի ունեցաւ 30 Նոյեմբեր, Կիրակի, Լոնտոնի մէջ, 81 տարեկան հասակին մէջ։

Յուղարկաւորութիւնը կը կատարուի այսօր Չորեքշաբթի Դեկտ. 3 կէսօրէ վերջ ժամը 2ին Լոնտոնի Ս. Սարգիս եկեղեցիին մէջ, Iverna Gardens, London, W. 8. Հանգուցեալին մարմինը պիտի ամփոփուի Kensal Riseի գերեզմանատունը։



## Անգլերէնի դասեր

Հայ Օրիորդ մը, sténo - dactylo, տրամադիր է անգլիերէնի դասեր տալ փափաքողներուն։ Մատչելի գիներ։ Դիմել «Յառաջ»ի վարչութեան։



IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H STEPHAN





եւ ուրախութիւնն ունեցայ Պուլկարիոյ մէջ գտնելու կատարեալ արձագանգը իմ զգացումներուս։ Կուսակից չեմ որեւէ քաղաքական ճակատի։ Ընդհակառակն, իմ ջանքերս կը ձգտին միայն խաղաղութեան ամրացման եւ միւս կողմէ կազմալուծման բոլոր տեսակի թշնամական ճակատներուն, որոնց ցաւալի հետեւանքները ցոյց տուաւ ընդհ. պատերազմը։

## Մոսկուայի դատավարութիւնը

Մոսկուայի մասնաւոր դատարանը հարցաքննեց ամբաստանեալներէն Կուպրիանոֆը. որ յայտնեց թէ դաւադիրները կը ջանային գործարաններուն մեծ մասը հաստատել Խորհրդ. Միութեան արեւմտեան սահմաններուն մօտ, որպէսզի զինուորական գործողութեանց առաջին օրերէն իսկ, անոնք իյնան թշնամիներուն ձեռքը։

Ռամզին կրկին լսուեցաւ եւ այս անգամ յայտնեց թէ զինուորական միջամտութեան պատրաստուող պետութեանց ախորժակը այնքան մեծ էր, որ եթէ զանոնք գոհացնել ուզէին, պէտք պիտի ըլլար Ռուսիան բաժանել եւ տնտեսապէս զայն գերի դարձնել։!

Վկայ մը, ճարտարագէտ Կլակովսկի, յայտնեց թէ 1927ին, Ռամզին երբ արտասահմանէն վերադարձաւ, յայտնեց թէ Փարիզի բանակցութեանց ընթացքին, մասնաւորաբար զբաղեր էին զինուորական միջամտութեան պատրաստութեամբ։ Կը մտածէին այդ միջամտութիւնը իրականացնել Լեհաստանի եւ Ռումանիոյ բանակներով, Ֆրանսայի հրամանատարութեամբ եւ ելմտական օժանդակութեամբ։ Այդ զեկոյցին վրայ, ճարտարագէտներու կեդրոնը մտածեց նուիրուիլ խափանարարութեան գործին, նուազեցնելու համար երկրին ինքնապաշտպանման կարողութիւնը եւ տնտեսական ուժը։ Ձեռնարկուեցաւ քայքայելու սահմանամերձ երկաթուղիները։ Եւ նիւթեղէնի պակասի պատրուակին տակ, այդ երկաթգծերը նուազ քանակութեամբ ստացան անհրաժեշտ նիւթեր քան երկրին ներսի երկաթուղիները։

Դատարանը իբր վկայ լսեց նաեւ ուսուցչապետ մը Եուրովսկի որ տարբեր ամբաստանութեան մը տակ կը գտնուի։

Եուրովսկի 1928ին իմացած էր ճարտարարուեստական կուսակցութեան մասին։ Կը ճանչնար անոր կեդր. կոմիտէին անդամները, Ռամզինն ու Չարնովսկին։ 1928ի սկիզբները Եուրովսկի արտասահման կը գտնուէր. այդ կուսակցութեան մասին տեղեկութիւններ քաղեց ռուս գաղթականներու ներկայացուցիչին Միլիուքոֆէն, որ կը կարծէր թէ զինեալ միջամտութեան գաղափարը հասունցած է Ֆրանսայի մէջ։ Խօսելով Ֆրանսայի ընկերվարականներու դիրքին մասին՝ հանդէպ միջամտութեան, Միլիուքոֆ կը կը կարծէր թէ թէեւ գործաւորները առհասարակ բացառական դիրք կը բռնեն պատերազմի դէմ, բայց ընկերվարական ղեկավարները միջամտութիւնը եթէ ոչ բացէ ի բաց, գոնէ սկզբունքով պիտի պաշտպանէին, Միլիուքոֆ հաւանական կը նկատէր որ միջամտութիւնը տեղի ունենայ 1930ին։ Սակայն Եուրովսկի լսեց թէ թուականը յետաձգուած է։ Ամէնէն յարմար կը նկատուէր 1931—32ը։ Այդ թուականին եւս միջամտութեան ղեկավարութիւնն ունիւթական պահանջներու գոհացումը պիտի ստանձնէր Ֆրանսա։ Զինուորական գործողութիւններուն պիտի մասնակցէին Լեհաստան եւ Ռումանիան, յետոյ Եսթոնեան, Եուկօսլաւիան եւ նաեւ թերեւս Չեխօսլովաքիան։

Իւրաքանչիւրը իր մասնակցութեան փոխարէն բաժին մը պիտի ստանար ռուսական հողերու բաժանման մէջ։

## Ռուսիա կը գործէ Անգլիոյ մէջ

ԼՈՆՏՈՆ 3 դեկտ.— Այսօր բազմաթիւ երեսփոխաններ հարց տուին վարչապետին թէ երէկ իրիկուն Մոսկուայի ռատիոկայանէն տրուած եւ անգլիական կայարաններէն ստացուած կոչը, որ հրաւէր կ'ուղղէր անգլիացի բանուորներուն ըմբոստանալու, դրժումը չէ՞ խորհրդային կառավարութեան խոստման ո՛չ մէկ գրգռութիւն փորձելու Անգլիոյ մէջ եւ թէ կառավարութիւնը չպիտի՞ դիմէ անհրաժեշտ միջոցներուն։

Արտաքին նախարարը պատասխանելով վարչապետին տեղ, ըսաւ.— Տակաւին արտաքին նախարարութիւնը չէ՛ ստացած կոչին ստորագրութիւնը։ Բայց հատուածները որ ինծի ներկայացուեցան, ինձ կը ներշնչեն այն համոզումը թէ, թէեւ այդ կոչը իսկապէս ըմբոստացման հրաւէր մը չի կազմեր, ինչպէս կը կարծեն կարգ մը երեսփոխաններ, սակայն իրողութիւնը ըստ ի[ն]ս կը կազմէ խորհրդային կառավարութեան կողմէ տրուած խոստման դէմ շալ ժում մը։

Այս հիման վրայ, հրահանգ տուի Մոսկուայի անգլիական դեսպանին, որ բողոքէ խորհրդային կառավարութեան։



**Հ. Յ. Դ. ԵՒՐ. Կ. ԿՈՄԻՏԷՆ ԱՐՏԱԿԱՐԳ ԸՆԴՀ.**

ժողովի կը հրաւիրէ Փարիզի, Անիէռ-Պուա Քոլոնպի, Պիյեանքուռի, Շավիլի, Ալֆորվիլի, Սարսէլի, Առնուվիլ-լէ-Կոնէսի եւ Քաշանի բոլոր խումբերու ընկերները այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 2ին 120 Bld. Bellevilleի ճաշարանին վերնայարկը։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է։

## Երեկոյթ - պարահանդէսը

3 յունուար 1931, Chalet d'Edvard սրահին մէջ։

## Հ. Յ. Դ.

Գ Ա Ւ Ա Ռ

ՄԱՐՍԷՅԼԻ Պօմօն Սէն Ժիւլիէնի Ջաւարեան ենթակոմիտէի ընկերահամակրական հանդիպումը այս կիրակի իրիկուն ժամը 8.30ին Bar Heury, Bld. Fauvette, Beaumont, կը դասախօսէ՝ ընկ. Հայկ Սէրէնկիւլեան։

ՄԱՐՍԷՅԼԻ «Ռոստոմ» ենթակոմիտէն ժողովի կը հրաւիրէ Զարդարեան, Ա. Գարօ, Քեռի, Գէորգ Չաւուշ եւ Քրիս խումբերու բոլոր ընկերները, այսօր Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին, սովորական հաւաքատեղին մէջ։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է։ Կարեւոր օրակարգ։

ՎԻԷՆԻ Քրիստափոր խումբի ժողովը այս կիրակի ժամը 4ին Հ. Յ. Դ. Խաժակ ակումբին մէջ։ Կարեւոր օրակարգ։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է։ Կը խնդրուի, Բասկալի Ապառաժ խումբի եւ Շաւի Ռոստոմ խումբի խմբապետներէն, ներկայ գտնուիլ սոյն ժողովին։

ՄԱՐՍԷՅԼԻ Պատ. Միութեան վարչութիւնը խիստ կարեւոր հարցի մը շուրջ ժողովի կը հրաւիրէ Մարսէյլի, Պուլվար Օտտօի եւ Սէն Լուի մասնաճիւղերու բոլոր անդամները այս կիրակի ժամը 3ին 63 րիւ տը լա Րէփիւպլիք։ Պարտաւորիչ ներկայութիւն։ Ներկայ կ'ըլլայ Շրջ. Կոմիտէն։

ՄԱՐՍԷՅԼԻ Իշխան ենթակոմիտէն ստիպողաբար ժողովի կը հրաւիրէ Արամ, Աղբիւր Սերոբ, Եփրեմ Խան, Համազասպ, Վարդկէս խումբերը այս կիրակի առաւօտ ժամը 2ին սովորական հաւաքատեղին։ Խիստ կարեւոր օրակարգ։

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Կը փնտռուի Շապին Գարահիսարցի Տիկին Պայծառ Քէօրիւքճեան (ծնեալ Սամուէլեան) որ մօտ ամիս առաջ Պորտօէն եկած է Փարիզ իր փոքրիկ աղջկան Մարգրիտի հետ։ Շապին Գարահիսարի Հայր. Միութենէն եւ հայրենակիցներէ կը խնդրուի իմացնել իր ամուսնոյն Keurukdjian Haroutiounի, 9 Rue du Pas St. Georges, Bordeaux, Gironde.

Լուր տուողին 100 ֆր. նուէր։ Տիկին Պայծառէ կը խնդրուի ներկայանալ «Յառաջ»ի խմբագրատունը։



IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H STEPHAN

նկարի, յարձակեցաւ ոճրագործին վրայ, որ կրկին յաջողեցաւ գործածել իր ատրճանակը եւ յարձակողը թեթեւօրէն վիրաւորեց գլխէն, սակայն հասնող ոստիկաններու շնորհիւ, կարելի եղաւ զինքը զսպել ու տանիլ ոստիկանատուն։

Ոճրագործը 35 տարու Վրացի մըն է եւ ոստիկանատան մէջ յայտարարեց թէ անձնական վրէժի մը գոհացում կուտայ։ Կ'աշխատէր Օտէնքուռի մէկ գործատան մէջ՝ ուրկէ կը կարծէ թէ Ռամիշվիլի զինքը վտարել տուած է։

Ռամիշվիլիի բարեկամները, մասնաւորաբար Ժորտանիա, վրացական հանրապետութեան նախագահը, կը կարծեն թէ ոճրագործին յայտարարութիւնները կեղծ են։

Ոճրագործը առենին կը պատկանէր սոց. դեմ. կուսակցութեան, բայց շատոնց է որ հեռացած էր անկից եւ ամէն կապ խզած։

Ռամիշվիլի, մեծ գործունէութիւն ցոյց կուտար ի պաշտպանութիւն Վրաստանի՝ ընդդէմ բոլշեւիկեան բռնապետութեան։ Վրաստան մնացած իր բարեկամներուն հետ կը շարունակէր գաղտնի կապեր պահել, եւ այդ կերպով կը վարէր ընդդէմ բոլշեւիկեան իշխանութեան ըմբոստացում մը՝ որմէ շատ կը մտահոգուէին երկրին կարմիր վարիչները։ Վերջերս դեռ, անոնք գաղտնի հաւաքոյթ մը ունեցեր էին։ Չեկան իմացեր էր եւ թերթերը մեծ աղմուկ հաներ էին, խռովութեան պատասխանատու ցոյց տալով Ռամիշվիլին, որ մահուան սպառնագրեր կը ստանար։

Վրաց պատուիրակութիւնը կը կարծէ թէ ոճրագործը բոլշեւիկներու ձեռքը գործիք եղած է։ Ոճրագործը յայտնած է թէ զէնք ելլն. գնելու համար, բարեկամէ մը 2000 ֆրանք առած է։ Ոստիկանութիւնը կը փնտռէ արդէն թէ ո՞վ է այդ խորհրդաւոր բարեկամը որ զինած է ոճրագործին ձեռքը։

## Կարճ եւ կտրուկ...

ՄՈՍԿՈՒԱ, 7 Դեկտ.— Գերագոյն դատարանը մահուան դատապարտեց Ռամզինը, Լարիչէվը, Զարնովսկին, Քալիննիքովը եւ Ֆէտօթովը, իսկ տասնական տարի բանտարկութեան Քուբբիանովը, Սիդնինը եւ Օչքինը։

⁂ ՄՈՍԿՈՒԱ, 7 Դեկտ.— Թոմսկի մէջ, հրացանազարկ եղան ճարտարագէտ Վլատեմսկին, Բազմարուեստեան վարժարանի ուսուցիչ Տոպմոքանսկին, աշխատանքի գործավարութեան կին պաշտօնեաներէն մէկը՝ Տիկ. Լեվիցկայա, 3 ուսանողներ եւ 5 գործաւորներ։

Սիպերիական թերթ մը կը գրէ թէ հրացանի բռնուած է նաեւ ռուս բարձրաստիճան կղերական մը։

Մազանոֆ՝ Լէնինկրատի համագործակցականին նախկին պետը եւ իր օգնականը, որոնք մահուան դատապարտուեր էին «սննդեղէնի մէջ խափանարարութեան» յանցանքով, այսօր հրացանի բռնուեցան Լէնինկրատի մէջ։








### ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

ՍՏԱՑԱՆՔ

Սէն Մօր, Թ. Ք.— 70։
Տէսին, Ա. Ի.— 20։
Տէսին, Գործ.— 800։

Սավայեան, Մարտիկեան, Ծաղիկեան ընտանիքները եւ իրենց պարագաները ցաւով կը ծանուցանեն մահը իրենց սիրելի մօր եւ ազգականին՝

ԱՅՐԻ ՏԻԿԻՆ ՄԱՐԻ ՍԱՎԱՅԵԱՆԻ

Յուղարկաւորութիւնը տեղի ունեցաւ Նոյ. 25, Շաբաթ իրիկուն Պրիւսէլի մէջ։

### ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— կը փնտռեմ Մուշի Խաս գիւղացի եղբօրորդիս Աղեքսանդր Դաւիթեան, որ ասկէ 9 տարի առաջ կը գտնուէր Հար.Ամերիկայի Պուէնոս Այրէս քաղաքը։ Սակայն մօտ 18 ամիս է որ նամակ չեմ ստացած։ Իմացնել Սմբատ Դաւիթեանի, 11bis rue de Chemin de Fer, Clamart, (Seine), France.

կը խնդրուի Ամերիկահայ թերթերէն արտատպել։




IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H STEPAHN






ԳԻՆ՝ 30 ՖՐԱՆՔ
ԱՄԵՐԻԿԱ 1ուկէս տոլար

խազը իր ճառին մէջ չէ պնդած Անգլիոյ եւ իր հպատակներուն վերագրուած արարքներուն վրայ։

Երէկ կէս օրէն յետոյ, Անգլիոյ արտաքին Նախարարը այս երկու պատասխանները կարդաց Խորհրդարանին մէջ։ Պահպանողականներէն շատերը յայտնեցին թէ գոհ չեն այդ պատասխաններէն եւ պահանջ դրին որ կառավարութիւնը նոր բացատրութիւններ ուզէ Մոսկուայէն։

## Եգիպտական նոր կուսակցութիւնը

ԳԱՀԻՐԷ, 8 դեկտեմբեր.— Եգիպտոսի ժողովրդական Նոր կուսակցութեան բացումը կատարուեցաւ այսօր Գահիրէի մէջ, նախագահութեամբ վարչապետ Իսմայիլ Սըտքը փաշայի, որ ստանձնած է անոր ղեկավարութիւնը։ Իր ճառին մէջ, Սըտքը փաշա քննադատեց Վաֆտի կողմէ ընդունուած եւ կիրարկուած օրէնսդրութիւնը որ ազգային Խորհրդարանին մենաշնորհը կը դարձնէր Թագաւորին իրաւունքները։ Յետոյ յոյս յայտնեց թէ կարելի պիտի ըլլայ Անգլիոյ հետ կնքել պայմանագրութիւն մը՝ Եգիպտոսի անկախութեան հիման վրայ, պահպանելով բրիտանական շահերը։

## ՄԱՆՐ ԼՈՒՐԵՐ

*ԻՏԱԼՕՌՈՒՍ ԲԱՐԵԿԱՄՈՒԹԻՒՆ.— Թրիէսթէէն կը գրեն թէ իտալական իշխանութեանց ներկայացուցիչներու եւ խորհրդային հիւպատոսին ներկայութեամբ, Մոնֆալքոնէյի նաւարանէն ծով իջուցուեցաւ վիոթքա նաւը, որ շինուեր էր Ռուսիոյ հաշւոյն։ «Թան»ի մասնաւոր թղթակիցը այս առթիւ կը գրէ թէ Միլանի տեսակցութենէն յետոյ, անտեղի չէ շեշտել գործունէութիւնը, զոր ցոյց կուտայ բոլշեւիկեան նաւային պատուիրակութիւնը Իտալիոյ մէջ։ Իսկ իտալական մամուլը ոչ մէկ տող կը գրէ պատուիրակութեան մասին, որ ամէն օր կ'այցելէ Իտալիոյ նաւարանները եւ աչքէ կ'անցնէ անոր նաւային ուժը։ Կասկածներ կան որ ռուսեւ իտալական զինակցութիւն մը կը պատրաստուի գաղտնօրէն։*

*ՎԱՏԻԿԱՆԵԱՆ ԴՐԱՄ.— Պապին անունով կոխուած դրամները շրջաբերութեան պիտի դրուին տարեգլխէն սկսեալ եւ օրինաւոր ընթացիկ արժէք պիտի ունենան Իտալիոյ բոլոր շրջաններուն մէջ։ Պապը, Իտալիոյ կառավարութեան հետ կնքուած համաձայնութեան հիման վրայ, կրնայ ուզած չափով ոսկի դրամ կոխել տալ իտալական փողերանոցին մէջ։*








## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— կը փնտռեմ Մուշի Խաս գիւղացի եղբօրորդիս Աղէքսանդր Դաւիթեան, որ ասկէ 9 տարի առաջ կը գտնուէր Հար. Ամերիկայի Պուէնոս Այրէս քաղաքը։ Սակայն մօտ 18 ամիս է որ նամակ չեմ ստացած։ իմացնել Սմբատ Դաւիթեանի, 11bis rue de Chemin de Fer, Clamart, (Seine), France.

կը խնդրուի Ամերիկահայ թերթերէն արտատպել։




IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H STEPAHN


## Հ. Յ. Դ. ՔԱՌԱՍՆԱՄԵԱԿԸ

ԿԸ ՏՕՆՈՒԻ ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

*ԴԵԿՏ. 21ին* SALLE GAVEAU*ի ՄԷՋ*

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ՝ **Ա. ԱՀԱՐՈՆԵԱՆ**

*ՄՈՒՏՔ՝ 7.50 ՖՐԱՆՔ*

*Տոմսերու համար դիմել այժմէն «Յառաջ»ի խմբագրութեան*

## ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՇՔԵՂ ԵՐԵԿՈՅԹ

Զ. Ե. Ո. ՄԻՈՒԹԵԱՆ ՀՆԳԱՄԵԱԿԻՆ ԱՌԹԻՒ

*ՍԱԼ ՏԸ ԺէՕԿՐԱՖԻԻ ՄԷՋ*, 184 Bld. St. Germain, Paris

13 դեկտեմբեր շաբաթ իրիկուն ժամը 8,30ին

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ՝ Ա. ԱՀԱՐՈՆԵԱՆ

ՄԱՍՆԱԿՑՈՒԹԵԱՄԲ՝ Հ. Յ. ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ԵՒ Հ. Մ. Ը. Մ.ի

*ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՃՈԽ ԲԱԺԻՆՈՎ*

*ՆՈՒԱԳԱԽՈՒՄԲ ԵՒ ԵՐԳՉԱԽՈՒՄԲ*

Մանրամասնութիւնները յաջորդաբար

## RECITAL DE VIOLON ԺՕՐԺ ՍԻՆԱՆԵԱՆԻ

վաղը Հինգշաբթի իրիկուն ժամը 9ին Salle des Concerts du Couservatoireի մէջ, 2bis Rue du Conservatoire, Paris.

Տոմսերը՝ 30, 20, 15, 10, 8 եւ 5 ֆրանք

ԶԱՊԷԼ ՔԷՄԷՆՋԷՃԵԱՆ
ԵՒ
ՌՈՒԲԷՆ ՇԱՀՄԻՐԵԱՆ
ՆՇԱՆՈՒԱԾ

Պոլիս 21 Նոյ. 930 Փարիզ

## Հ. Յ. Դ.

*ԳԱՒԱՌ*

ՎԱԼԱՆՍԻ Երջ. կոմիտէն դասախօսական եւ վիճաբանական ժողովի կը հրաւիրէ ընկերներն ու համակիրները այս Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին, Հ. Յ. Դ. Գրադարանը։ կը խօսի՝ ընկ. Գեղամ Սարոյեան։ Նիւթ՝ Ռուս բոլշեւիկները եւ Եւրոպա։

ՄԱՐՍԷՅԼԻ Քրիստափոր ենթակոմիտէն ստիպողաբար ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերներն ու ընկերուհիները այս Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին։ Պարտաւորիչ ներկայութիւն։ Ներկաներու թիւը մեծամասնութիւն պիտի համարուի եւ բացակայողները պատասխանատու պիտի նկատուին։

ՄԱՐՍԷՅԼԻ Ակնունի ենթակոմիտէի ընդհ. ժողովը այս Ուրբաթ իրիկուն ժամը 7 30ին Ծանօթ հաւաքատեղին։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է։ բացակաները նկատի պիտի առնուին։

## ՑՈՒՇԱՏԵՏՐ

ԱՆԻԷՌ Պուա-Քոլոնպի մէջ կազմուած է Պատանեկան միութիւն մը, որուն առաջին ժողովը այս Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին, 79 Rue des Chambards, Bois Colombs սրճարանին մէջ։ Անդամակցիլ փափաքողները կը հրաւիրուին այս ժողովին։

Զ. Ե. Ո. Միութեան Փարիզի մասնաճիւղին դասախօսական ժողովը վաղը Հինգշաբթի ժամը 9ին Ֆլորիայի մէջ, կը խօսի Տոքթ. Ամատեան, Նիւթ ունենալով՝ *Ազգերու հոգին*։ մէկ ժամ սինէմա։

ՍԻՓԱՆ երգչախումբի անդամուհիներու փորձը այս իրիկուն ժամը 8.30ին 71 Ave. Klébér.

Զ. Ե. Ո. Միութեան Լիոնի մասնաճիւղը ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր անդամները եւ անդամագրուիլ փափաքողները այս իրիկուն ժամը 8ին, 181 Cours Lafayette, քաֆէ տը լա կառի ներքնասրահը։ Խիստ կարեւոր օրակարգ։

## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

*ՍՏԱՑԱՆՔ*

Մարսէյլ, Գործ.— 1840։
Շավիլ, Գայս.— 100։
Ռոան, Գործ.— 130.80։
Պրայիլա, Օ. Ա.— 145։
Լա Սիօթա, Գործ.— 105։
Լիոն, Խօր,— 150։



## ԱԶԴ

*Յառաջիկայ Յունուարի սկիզբները, Փարիզի մէջ, Տոքթ. Միհրան Կ. Քէշիշեանի խմբագրութեամբ, պիտի հրատարակուի «Առողջ Կեանք» անունով բժշկա-առողջապահական ամսագիր մը, որուն՝ իրենց աշխատակցութիւնը պիտի բերեն հայ եւ օտար բժշկական դասու լաւագոյն ուժերը։ «Առողջ Կեանք» երեւան պիտի գայ ընդարձակ բայց իրագործելի ծրագրով մը, նպատակ ունենալով տարածել մեր մէջ ընդհանուր առողջապահութեան օրէնքները, սորվեցնել բազմաթիւ հիւանդութիւններէ զգուշանալու միջոցները, տալ տնական բժշկութեան եւ տնական դեղարանի յատուկ ծանօթութիւնները, զբաղուիլ նաեւ գեղեցկագիտական առողջապահութեամբ որ խորապէս կը հետաքրքրէ տիկիններն ու օրիորդները, տալով այս առթիւ խնամքով պատրաստուած ուսումնասիրութիւններ, որոնց հետեւելով միշտ կարելի է երկար ատեն անվթար պահել ֆիզիքական գեղեցկութիւնը եւ աւելցնել մարմնական շնորհն ու հրապարոյրը, կամ զայն ձեռք ձգել։*

*Ամսագիրը, պիտի ունենայ նաեւ գիտական բաժին մը դիւրահասկնալի հետաքրքրական եւ օգտակար։*

*Բաժանորդագրութեան պայմաններն են.*

*40 ֆրանք, Ֆրանսայի, Սուրիոյ, Թուրքիոյ եւ Պալքաններու համար, 2 տոլար մնացեալ երկիրներու համար։*

*Թղթակցութիւն, յօդուած, դրամ ղրկել միայն հետեւեալ հասցէին.*

Dr. Mihran G. Kechichian, 6 Rue Victor-Cousin Paris (5e)





## Անգլիոյ անգործները կը շատնան

ԼՈՆՏՈՆ, դեկտ. — Ընդհանրապէս կը պատահի որ դէպի Ծնունդ անգործներու թիւը կը նուազի: Սակայն այս տարի բոլորովին հակառակն է որ կը պատահի եւ այս իրիկուն իսկ հրատարակուած վիճակագրութիւն մը կը հաստատէ թէ դեկտ. 1ին կառավարական նպաստ ստացող անգործներու թիւնվրայ 19179ի յաւելում մը եղած է բաղդատմամբ նախորդ շաբթուան թիւին: Այսօր, անգործներու ընդհ. թիւն է 2 միլիոն 305,639, այսինքն մէկ միլիոն աւելի քան անցեալ տարի նոյն շրջանին:

⁂ Նոյեմբերի վերջ հրատարակուած վիճակագրութենէ մը կը հասկցուի թէ Գերմանիոյ մէջ անգործներու թիւն է 3 միլիոն 76,2000, անցեալ տարի նոյն շրջանին անգործներու թիւն էր 2 միլիոն 101,000: Ըսել է հարիւրին 80ի չարաշուք յաւելում մը:

## Պիրմանիոյ բաժանումը

Լոնտոնի համաՀնդկական խորհրդաժողովին յատուկ յանձնախումբը, որ կը զբաղի Պիրմանիոյ Հնդկաստանէ բաժանման հարցով, հաւանութիւն յայտնեց այն բանաձեւին, որով կը պահանջուի որ անգլ. կառավարութիւնը յայտարարէ թէ սկզբունքով կ'ընդունի բաժանումը:

Նոյնպէս կը պահանջուի որ կառավարութիւնը ճշդէ թէ բաժանումը չպիտի վտանգէ Պիրմանիոյ մէջ պատասխանատու կառավարութեան մը հաստատման ծրագիրը:



ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՇՔԵՂ ԵՐԵԿՈՅԹ

Զ. Ե. Ո. ՄԻՈՒԹԵԱՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՀԱՆԳԱՄԱՆՔՈՎ ԱՌԹԻՒ

ՍԱԼ ՏԸ ԺԷՈԿՐԱՖԻ ՄԷՋ, 184 Bld. St. Germain, Paris

13 դեկտեմբեր շաբաթ իրիկուն ժամը 8.30ին

ԿԸ ՆԱԽԱԳԱՀԷ՝ Ա. ԱՀԱՐՈՆԵԱՆ

ՄԱՍՆԱԿՑՈՒԹԵԱՄԲ՝ Հ. Յ. ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ԵՒ Հ. Մ. Ը. Մ.Ի

Կը խօսին Մ. ԳՈՒՅՈՒՄՃԵԱՆ (Հ. Յ. Դ.)

Գ. ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆ (Հ. Մ. Ը. Մ.)

եւ Շ. ՆԱՐԴՈՒՆԻ (Զ. Ե. Ո. Մ.)

գեղարուեստական ճոխ բաժին հայ եւ օտար արուեստագէտներով, Զ. Ե. Ո. Միութեան ԵՓՐԱՏ նուագախումբը:

Մանրամասնութիւնները յաջորդաբար

ԵՐԵԿՈՅԹ - ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

կազմակերպուած փարիզի Հար. շրջանի (Պանթէօն, Քաշան, Պուրկ-լա-Րէն, Ռոպէնսոն եւ Մոնրուժ) Յառաջդիմասիրաց Միութեան կողմէ՝ ի նպաստ իր բացած դպրոցին:

20 դեկտ. Շաբաթ իրիկուն ժամը 9էն մինչեւ առաւօտ, 3 Villa d'Orléans (voie privée hauteur du 67 Ave. d'Orléans) մէթրօ՝ Alésia.

Հայերէն երգեր եւ արտասանութիւններ դպրոցին երկսեռ 30 աշակերտներէն:

Եւրոպական, հայկական եւ կովկասեան պարեր եւ հաճելի անակնկալներ. ընտիր ճազպանտ, Թառիստ Աբգար կը նուագէ, մատչելի պիւֆէ:

Ով որ կը սիրէ հայ մանուկը եւ հայ լեզուն, թող հաճի ներկայ ըլլալ:

*Մուտք՝ այրերու 7.50, կանանց 5 ֆրանք*

ՍԿԱՈՒՏԱԿԱՆ ԵՐԵԿՈՅԹ

կազմակերպուած Ֆ. Հայ Արիներու փարիզի շրջանի երէց, սկաուտ, եւ գայլիկներու խումբերու կողմէ

*Կը նախագահէ՝ ԿՈՄՍ ՀԱՆՐԻ ՄԱՐԹԻ*

Անդամ սկաուտական միջազգային կոմիտէին

13 դեկտ. շաբաթ իրիկուն ժամը 8.30ին

Salle d'Iénaի մէջ, 10 Ave. d'Iéna (Թրոքատէրոյի մօտ):

RECITAL DE VIOLON ԺՕՐԺ ՍԻՆԱՆԵԱՆԻ

Այսօր Հինգշաբթի իրիկուն ժամը 9ին Salle des Concerts du Couservatoireի մէջ, 2bis Rue du Conservatoire, Paris.

Տոմսերը՝ 30, 20, 15, 10, 8 եւ 5 ֆրանք

ՓԱՐԻԶԱՀԱՅ ՏՐԱՄԱԹԻՔ ԹԱՏԵՐԱԽՈՒՄԲ

7րդ ՏԱՐԻ Ղեկավար Տ. ՆՇԱՆԵԱՆ 119րդ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

THÉATRE CONSERVATOIRE RENÉE-MAUBEL

8—10 Rue do l'Orient, Métro Abbesses

*Ի պատիւ դերասան Ա. ԳՄԲԷԹԵԱՆԻ*

20 դեկտեմբեր շաբաթ գիշեր ժամը 8.30ին կը ներկայացուի՝

ՇԻՐՎԱՆԶԱՏԷԻ ՊԱՏՈՒԻ ՀԱՄԱՐ (ՏՌԱՄ 4 ԱՐԱՐ)

*Կը մասնակցին՝* տիկ. Սիրուհի Նշանեան, Անահիտ, Քնարիկ, Պ. Պ. Տ. Նշանեան, Ա. Կոթիկեան, Ա. Գմբէթեան, Շ. Սարեան, Տէրվիշեան, եւայլն:

*Գիները ժողովրդական*



Հ. Յ. Դ.

*ԳԱՒԱՌ*

Վ.ԱԼԱՆՍԻ Շրջ. կոմիտէն դասախօսական եւ վիճաբանական ժողովի կը հրաւիրէ ընկերներն ու համակիրները վաղը Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին, Հ. Յ. Դ. Գրադարանը: Կը խօսի՝ ընկ. Գեղամ Սարոյեան: Նիւթ՝ Ռուս բոլշեւիկները եւ Եւրոպա:

ՄԱՐՍԷՅԼԻ Քրիստափոր ենթակոմիտէն ստիպողաբար ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերներն ու ընկերուհիները վաղը Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին: Պարտաւորիչ ներկայութիւն: Ներկաներու թիւը մեծամասնութիւն պիտի համարուի եւ բացակայողները պատասխանատու պիտի նկատուին:

ՄԱՐՍԷՅԼԻ Ակնունի ենթակոմիտէի ընդհ. ժողովը վաղը Ուրբաթ իրիկուն ժամը 7.30ին ծանօթ հաւաքատեղին: Բոլոր ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է: Բացակաները նկատի պիտի առնուին:

## ՑՈՒՇԱՏԵՏՐ

ԱՆԻԷՌ Պուա-Քոլոնպի մէջ կազմուած է պատանեկան միութիւն մը, որուն առաջին ժողովը վաղը Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին, 79 Rue des Chambards, (Bois Colombs) սրճարանին մէջ: Անդամակցիլ փափաքողները կը հրաւիրուին այս ժողովին:

Զ. Ե. Ո. Միութեան փարիզի մասնաճիւղին դասախօսական ժողովը այսօր Հինգշաբթի ժամը 9ին Ֆլորիայի մէջ: Կը խօսի Տօքթ. Ալմաստեան, նիւթ ունենալով՝ *Ազգերու հոգին*: Մէկ ժամ սինէմա:

ՈՒՐՖԱՅԻ Հայր. միութեան ժողովը վաղը Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին Քաֆէ Փըթիթ Սուրսի մէջ: Մէթրօ՝ Օտէօն:

ԳՐԱԿԱՆ ԱԿՈՒՄԲ

Վաղը Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին, Քաֆէ Voltaireի մէջ, (21 rue de l'Odéon), կը խօսի Պ. Ռէն: Նիւթ՝ Պատերազմի եւ խաղաղութեան գաղափարը:

## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

*ՍՏԱՑԱՆՔ*

Քէմփէր, Բ. Կ.— 350:
Վիէն, Գուրծ.— 210.
Ռոման, Ս. Ս.— 100:
Կրընոպլը, Ա. Թ.— 70:
Շաս, Պ. Ա.— 125:
Պելֆոռ, Կ Հ.— 70:
Օլթէն, Յ. Մ — 200:

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Արմաշցի Հեղինէ Վարդինեան, մօր անունը Սրբուհի, հօր անունը Կաբրիէլ, ամուսնին անունը Սիրուն, երկու աղջիկներուն անունը՝ Բաբուհի եւ Սիրագարդ: Կը կարծուի Սուրիոյ գիւղերուն մէջ: Կը խնդրուի տեղեկութիւն տալ Շ. Նարդունիի, *Յառաջ*ի հասցէով:



IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H STEPAHN

Հ. Յ. Դ. ԲԻՒՐՈՆ, ԵՒՐՈՊԱՅԻ ԿԵԴՐ. ԿՈՄԻՏԷՆ, ՓԱՐԻԶԻ ԵՒ
շրջաններու կոմիտէները խորին ցաւով կը ծանուցանեն

# ԻՇԽԱՆՈՒՀԻ ՍԱԹԵՆԻԿ ԱՐՂՈՒԹԵԱՆԻ

մահը, որ տեղի ունեցաւ ուրբաթ օր կարճատեւ հիւանդութենէ մը վերջ:

ԱՐՂՈՒԹԵԱՆ ընտանիքը, ազգականներն ու բարեկամները կը ծանուցանեն մահը

# ԻՇԽԱՆՈՒՀԻ ՍԱԹԵՆԻԿ ԱՐՂՈՒԹԵԱՆԻ

Յուղարկաւորութիւնը տեղի պիտի ունենայ փարիզի Հայոց եկեղեցիին մէջ, այսօր, ժամը 9.30ին, թաղման արարողութիւնը պիտի կատարուի Շավիլի գերեզմանատան մէջ (կայարան՝ Մօնփարնաս) ժամը 10.30ին:

*Փարիզի, Պերլինի, Լոնտոնի Թուրք դեսպանները ինչպէս նաեւ Ժընեւի զինաթափութեան խորհրդաժողովին մասնակցող Թուրք պատուիրակութեան զինուորական խորհրդականը՝ Ճէվատ փաշա:*

*Խորհրդակցութեան գլխաւոր առանցքը կազմած է հանրային պարտքերու խնդիրը:*

*Զրոյց կը շրջի նաեւ թէ գործավարներու խորհուրդին մէջ կարգ մը փոփոխութիւններ նախատեսուած են:*

## *Թուրք հանրային պարտքերը*

*Հանրային Պարտուց վարչութեան խորհուրդին մէջ Թուրք պահանջատէրերու պատուիրակը, Ջէքիայի պէյ Պոլիս հասաւ: Լրագրողներուն յայտնեց թէ մասնաւոր որեւէ պաշտօն չունի: Սակայն ստացուած ստոյգ լուրերու հիման վրայ, կը կարծուի թէ Ջէքիայի պէյ պիտի ջանայ Թուրքիոյ եւ պարտապահանջներուն միջեւ հաշտեցման ուղի մը գտնել, կիրարկելու համար Փարիզի համաձայնութիւնը, որ նկատի առած է Թուրքիոյ վճարման կարելիութիւնները:*

*Բանակցութիւնները կը դժուարանան, որովհետեւ Թուրք կառավարութիւնը, ազդուելով Հանր. Պարտուց վարչութեան վերջին բողոքէն, որ վատ ազդած է միջազգային ելմտական շրջանակներուն վրայ, կը յայտնէ թէ առաջարկուած պայմանները անընդունելի են:*







# Հ. Յ. Դ.

*Գ Ա Ւ Ա Ռ*

*ԼԻՈՆԻ Պատ. միութեան ընդհանուր ժողովը այս Հինգշաբթի իրիկուն ժամը 8.30ին Գրադարանի սրահը: Խիստ կարեւոր օրակարգ:*

*ԼԻՈՆԻ Կայծակ խումբի ժողովը վաղը Չորեքշաբթի իրիկուն ժամը 8.30ին Հ. Յ. Դ. Գրադարանը: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է:*

## ՑՈՒՑԱՏԵՏՐ

*Չ. Ե. Ո. Միութեան Փարիզի մասնաճիւղին դասախօսական ժողովը այս Հինգշաբթի իրիկուն ժամը 9ին Ֆլօրիայի մէջ: Կը խօսի Պ. Օհան Կարօ, նիւթ ունենալով աշուղ Սայաթ Նովան: Մէկ ժամ սինէմա:*

*Չ. Ե. Ո. Միութեան Լիոնի մասնաճիւղի վարչութիւնը ստիպողաբար ժողովի կը հրաւիրէ բոլոր անդամները վաղը իրիկուն ժամը 8ին* Cours Lafayètte 181 café de la Gare*ի ներքնասրահը: Կարեւոր օրակարգ: Պարտաւորիչ ներկայութիւն:*

## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

*ՍՏԱՑԱՆՔ*

*Մարսէյլ, Գործ.— 980:*
*Փարիզ, Լ. Ե.— 35:*
*Կարտան, Ս. Հ.— 245:*
*Ժուանէօզ, Ս. Մ.— 70:*
*Միլան, Գործ.— 88,25 լիրէզ:*
*Ալէս, Մ. Կ.— 140:*

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Արմաշցի Հեղինէ Վարդինեան, մօր անունը Սրբուհի, հօր անունը Գաբրիէլ, ամուսնին անունը Սիրուն, երկու աղջիկներուն անունը՝ Բ սրուհի եւ Սիրազարդ: կը կարծուի Սուրիոյ գիւղերուն մէջ: կը խնդրուի տեղեկութիւն տալ Շ. Նարդունիի, Յառաջի հասցէով:

— կը փնտռուին Գոնեայի գաղթականներէն Ղազէր աղա Թելֆէճեան (ապուխտագործ) իր քեռայրը Գալայճը Խաչէր աղա Խաչատուրեանի զաւակները Յակոբ եւ Եղիա 20 եւ 25 տարեկան, քոյրերնին Տիկին Էլիզա 35 տարեկան, որոնք մինչեւ 1921 Գոնիա կը գտնուէին: Կը կարծուի թէ այժմ Յունաստան կամ Սուրիա կը գտնուին: Իմացնել դեղագործ Յակոբ Խաչատուրեանի, 159 Rue Pierre Corneille, Lyon, France. Լուր տուողին նուէր,

Կը խնդրուի արտասահմանի թերթերէն արտատպել:

## ԱԶԴ

*Յստաշիկայ Յունուարի սկիզբները, Փարիզի մէջ, Տօքթ. Միհրան Կ. Քէշիշեանի խմբագրութեամբ, պիտի հրատարակուի «Առողջ Կեանք» անունով բժշկա-առողջապահական ամսագիր մը, որուն՝ իրենց աշխատակցութիւնը պիտի բերեն հայ եւ օտար բժշկական դասու լաւագոյն ուժերը: «Առողջ Կեանք» երեւան պիտի գայ ընդարձակ բայց իրագործելի ծրագրով մը, նպատակ ունենալով տարածել մեր մէջ ընդհանուր առողջապահութեան օրէնքները, սորվեցնել բազմաթիւ հիւանդութիւններէ զգուշանալու միջոցները, տալ տնական բժշկութեան եւ տնական դեղարանի յատուկ ծանօթութիւնները, զբաղուիլ նաեւ գեղեցկագիտական առողջապահութեամբ որ խորապէս կը հետաքրքրէ տիկիններն ու օրիորդները, տալով այս առթիւ խնամքով պատրաստուած ուսումնասիրութիւններ, որոնց հետեւելով միշտ կարելի է երկար ատեն անվթար պահել ֆիզիքական գեղեցկութիւնը եւ աւելցնել մարմնական շնորհն ու հրապուրոյրը, կամ գոյն ձեռք ձգել:*

*Ամսագիրը, պիտի ունենայ նաեւ գիտական բաժին մը դիւրահասկնալի հետաքրքրական եւ օգտակար:*

*Բաժանորդագրութեան պայմաններն են.*

*40 ֆրանք, Ֆրանսայի, Սուրիոյ, Թուրքիոյ եւ Պալքաններու համար: 2 տոլար միւսցեալ երկիրներու համար:*

*Թղթակցութիւն, յղուած, դրամ ղրկել միայն հետեւեալ հասցէին.*

Dr. Mihran G. Kechichian, 6 Rue Victor-Cousin Paris (5 e)




IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)
Le Gérant H STEPAHN

*կառավարութեան կողմէ տրուած տեղեկութեանց համաձայն, հանդարտութիւն կը տիրէ Սպանիոյ ամբողջ գաւառներուն մէջ։*

## Ամերիկայի ելմտական տագնապին առթիւ

*Նիւ-Եորքի կարեւոր դրամատուններէն «Միացեալ-Նահանգներու դրամատունը» սնանկացաւ։ Այս սնանկութիւնը խոշոր անդրադարձումներ ունեցաւ Սակարանին վրայ։ Բազմաթիւ արժեթուղթեր մեծ անկում կրեցին։ Այս սնանկութեան հետեւանքով, ամերիկեան Ծերակոյտը հաւանաբար որոշէ քննութիւն կատարել ամերիկեան դրամատուններու նիւթական կացութեան մասին։*

*«Տէյլի Հէրըլտ» կը գրէ թէ ամերիկեան ուրիշ դրամատուն մը եւս պիտի փակէ իր դռները այս մէկ քանի օրուան մէջ։*

*Վճարումները դադրեցուցած են նաեւ բազմաթիւ երկրորդական դրամատուններ։*

*Անգլիական կարեւոր թերթեր, որոնց մէջ «Թայմզ» կը բացատրեն Նիւ-Եորքի ելմտական այս կացութիւնը եւ կը կարծեն թէ Ամերիկայի ելմտական այս ներկայ վիճակը հետեւանքն է ամերիկեան դրամատուններու գործունէութեան եղանակին։*

*Կը կարծուի թէ Ամերիկա, Ֆրանսա եւ Անգլիա մօտ ատենէն պիտի ստիպուին գործակցիլ ոսկի-պահեստի բաշխումին մասին կարգադրութեան մը գալու համար։*

## Ամերիկայի կարմիրները Ֆրանսայի դէմ

*Հազար հինգ հարիւր ամերիկացի համայնավարներ փորձեցին տողանցք մը կատարել Նիւ-Եորքի ֆրանսական հիւպատոսարանին առջեւէն, կրելով դրօշներ՝ որոնց վրայ ֆրանսական եւ անգլիական կառավարութեան դէմ անարգական ու թշնամական արձանագրութիւններ կային։ Ոստիկանութիւնը արգիլեց ցոյցը, որուն հետեւանքով՝ գիրկ գիրկի կռիւ մը տեղի ունեցաւ։*

*Ոստիկանութիւնը պատռեց դրօշները։ Հազարաւոր անձեր հաւաքուած էին դիտելու կռիւը։*

*Կռիւներ տեղի ունեցան նաեւ ցուցարարներուն եւ հաւաքուած բազմութեան միջեւ։ Ոստիկանութիւնը կրկին յարձակեցաւ եւ մեծ դժուարութեամբ միայն յաջողեցաւ ցրուել ցուցարարները։ Բազմաթիւ ձերբակալութիւններ կատարուեցան։*

## Կռիւը Պերլինի փողոցներուն մէջ

*Կիրակի երեկոյ Պերլինի չորս թաղամասերուն մէջ տեղի ունեցան ուժեղ ցոյցեր, զոր կազմակերպած էին Հանրապետականները՝ բողոքելու համար «Արեւմուտքէն նոր բան չկայ» շարժանկարին արգելքին դէմ։ Այս ցոյցերուն ընթացքին պատահեցան կռիւներ եւ վիրաւորուեցան 2 հանրապետականներ եւ 4 հիթլերեաններ։ Յայտարարուած ըլլալով թէ Հիթլեր ճառ մը պիտի խօսի այս հինգշաբթի երեկոյ, հանրապետականները որոշած են ամէն միջոցաւ խանգարել։*

### ՈՃԻՐ ՄԸ ՊՈԼՍՈՅ ՄԷՋ

Թուրքիոյ Ծխախոտի վարչութեան ընդհ. տնօրէն Պէհճէթ պէյ, երբ իր գրասենեակը կը մտնէր, յարձակում կրեց նոր ճամբուած պաշտօնեայի մը կողմէ, որ քանի մը ձեռք ատրճանակ պարպեց իր վրայ։

Պէհճէթ թեթեւօրէն վիրաւորուեցաւ. ծանրօրէն վիրաւորուեցաւ անոր ընկերակցող ուրիշ պաշտօնեայ մը։ Ոճրագործը անձնասպան եղաւ։

### Ա. Ե. Հ. Կ. ԽԱՉԻ ՓԱՐԻԶԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻ ԵՐԵԿՈՅԹ - ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

*10 ՅՈՒՆՈՒԱՐ 1931*

*Կը խնդրուի բոլոր կազմակերպութիւններէն նկատի ունենալ այդ թուականը։*

## ԵՐԵԿՈՅԹ - ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

կազմակերպուած Փարիզի Հար. շրջանի (Պանեէօ, Քաշան, Պուրկ լա-Րէն, Ռոպէնսոն եւ Մօնրուժ) Յառաջդիմասիրաց Միութեան կողմէ՝ ի նպաստ իր բացած դպրոցին։

20 դեկտ. Շաբաթ իրիկուն ժամը 9էն մինչեւ առաւօտ, 3 Villa d'Orléans (voie privée hauteur du 67 Ave. d'Orléans) մէթրօ՝ Alésia.

Հայերէն երգեր եւ արտասանութիւններ դպրոցին երկսեռ 30 աշակերտներէն։

Եւրոպական, հայկական եւ կովկասեան պարեր եւ հաճելի անակնկալներ. ընտիր ճազպանտ, Թառիստ Աբգար կը նուագէ, մատչելի պիւֆէ։

Ով որ կը սիրէ հայ մանուկը եւ հայ լեզուն, թող հաճի ներկայ ըլլայ։

*Մուտք՝ այրերու 7.50, կանանց 5 ֆրանք*

## Հ. Յ. Դ.

*ԳԱՒԱՌ*

*ԼԻՈՆԻ Պատ. միութեան ընդհանուր ժողովը վաղը Հինգշաբթի իրիկուն ժամը 8.30ին Գրադարանի սրահը՝ Խիստ կարեւոր օրակարգ։*

*ԼԻՈՆԻ Կայծակ խումբի ժողովը այսօր Չորեքշաբթի իրիկուն ժամը 8.30ին Հ. Յ. Դ. Գրադարանը։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է։*

Առաքել Թաթուլեան, Օդիտա Սերոբեան, Թովմաս Սերոբեան կը ծանուցանեն դառնաղէտ մահը իրենց ամուսնոյն, աղջկան եւ քրոջ՝

### ՋԱՐՈՒՀԻ ԹԱԹՈՒԼԵԱՆի

որ կնքեց իր մահկանացուն 20 տարեկան հասակին մէջ, տակաւին մէկ ամիս առաջ, թաղելէ յետոյ իր փոքրիկը՝ կարապետը։

Թաղման արարողութիւնը տեղի պիտի ունենայ 4. Ave. Porte d'Italie (մէթրօ իթալի), այսօր, Չորեքշաբթի առտուան ժամը 9ին։

## ՑՈՒՇԱՏԵՏՐ

*Զ. Ե. Ո. Միութեան Փարիզի մասնաճիւղին դասախօսական ժողովը վաղը Հինգշաբթի իրիկուն ժամը 9ին Ֆլօրիայի մէջ։ Կը խօսի Պ. Օհան Կարօ, նիւթ ունենալով աշուղ Սայաթ Նովան։ Մէկ ժամ սինէմա։*

*Զ. Ե. Ո. Միութեան Լիոնի մասնաճիւղի վարչութիւնը ստիպողաբար ժողովի կը հրաւիրէ բոլոր անդամները այս իրիկուն ժամը 8ին* Cours Lafayètte 181 café de la Gare*ի ներքնասրահը։ Կարեւոր օրակարգ։ Պարտաւորիչ ներկայութիւն։*

### ԵՐԵԿՈՅԹ ԼԻՈՆԻ ՄԷՋ

կազմակերպուած Լիոնի պատ. Միութեան կողմէ Գ. Սմառ. Քաթիպայի եւ Միքայէլ Նալպանտեանի հարիւրամեակին առթիւ դեկտեմբեր 20ին։

## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

*ՍՏԱՑԱՆՔ*

*Քրայովա, Յ. Զ.— 200։*
*Փարիզ, Ղ. Ս.— 105։*
*Փարիզ, Գ. Զ.— 50, մինչեւ 5 փետրուար 1931 կը պարտիք 90 ֆրանք։*









EMPIRE Մեւզիք-Հոլ՝ 37 Av. Wagram

IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H STEPAHN

# ՊԱՏՐԱՍՏՈՒԵՑԷՔ Հ. Յ. Դ. ՔԱՌԱՍՆԱՄԵԱԿԻՆ

## ՓԱՐԻԶԻ ՄԷՋ ԿԸ ՏՕՆՈՒԻ

*Այս Կիրակի երեկոյ* **Salle Gaveau**-*ի մէջ մեթրօ՝* **Miromesnil**

*Նախագահական մարմին՝ Ա. ԳԻՒԼԽԱՆՏԱՆԵԱՆ, Շ. ՄԻՍԱՔԵԱՆ, Ս. ՎՐԱՑԵԱՆ, Ա. ՋԱՄԱԼԵԱՆ, Մ. ՎԱՐԱՆԴԵԱՆ, Բժիշկ ՏԷՐ ԴԱՒԹԵԱՆ, Լ. ԹԱԴԷՈՍԵԱՆ, Մ. ԵՐԻՑԱՆՑ, Լ. ԳԵՒՈՆԵԱՆ, Լ. ՄՕԶԵԱՆ, Ս. ՏԷՐ ԹՈՎՄԱՍԵԱՆ, Մ. ԳՈՒՅՈՒՄՃԵԱՆ, Վ. ՇՈՒՇԱՆԵԱՆ, Ս. ՆԱԽԱՎԱՐԵԱՆ, Վ. ՓԱՍՏՐՄԱՃԵԱՆ։*

*Կը նախագահէ՝* Ա. ԱՀԱՐՈՆԵԱՆ

*կը խօսին՝* Մ. ՎԱՐԱՆԴԵԱՆ, Ա. ՋԱՄԱԼԵԱՆ, Մ. ԳՈՒՅՈՒՄՃԵԱՆ

ԵՒ ՖՐԱՆՍԱԿԱՆ ԸՆԿՎ. ԿՈՒՍԱԿՑՈՒԹԵԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑԻՉԸ

*Գեղարուեստական բաժնին կը մասնակցին Տիկիններ ԶԱՊԷԼ ԱՐԱՄ, ԻԴԱ ԱՐԴ ՂՈՒԿԱՍԵԱՆ, Ա. ԳԵՒՈՆԵԱՆ, Օր. ԱՂԱԲԷԿԵԱՆ, Պ. Պ. Ն. ՂՈՒԿԱՍԵԱՆ, ՆԱԽԱՍԱՐԴԵԱՆ (երգ), Օր. Ա. ԵՐԱՄԵԱՆ (ջութակ)։ Օր. ԱՐՏԵՄԻՍ ՏԷՐ ԹՈՎՄԱՍԵԱՆ, Պ. Պ. Ս. ԹՈՐՈՍԵԱՆ, Շ. ՍԱՐԵԱՆ, Նուագախումբ։*

*Ծխելը արգիլուած է։* *Մինչեւ 7 տարեկան տղոց մուտքը արգիլուած է*

*ԱՅԺՄԷՆ ԱՊԱՀՈՎԵՑԷՔ ՁԵՐ ՏՈՄՍԵՐԸ* *Դիմել «ՅԱՌԱՋ»ի ՎԱՐՉՈՒԹԵԱՆ*

ՀԱՆԴԷՍԸ ԿԸ ՍԿՍԻ ԺԱՄԸ ՃԻՇԴ 8.30ԻՆ

---

### ՓԱՐԻԶԱՀԱՅ ՏՐԱՄԱԹԻՔ ԹԱՏԵՐԱԽՈՒՄԲ

7րդ ՏԱՐԻ — Ղեկավար Տ. ՆՇԱՆԵԱՆ — 119րդ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

THÉATRE CONSERVATOIRE RENÉE-MAUBEL

8—10 Rue do l'Orient, Métro Abbesses

*Ի պատիւ դերասան Ա. ԳՄԲԷԹԵԱՆԻ*

20 դեկտեմբեր Շաբաթ գիշեր ժամը 8.30ին կը ներկայացուի՝

ՇԻՐՎԱՆԶԱՏԷԻ **ՊԱՏՈՒԻ ՀԱՄԱՐ** (ՏՐԱՄ 4 ԱՐԱՐ)

*Կը մասնակցին՝* Տիկ. Սիրուհի Նշանեան, Անահիտ, Քնարիկ, Պ. Պ. Տ. Նշանեան, Ա. Կոթիկեան, Ա. Գմբէթեան, Սուրէնեան, Էրվիշեան եւ Աբգար։ *Գիները ժողովրդական*

---

### ԳԱՄԱՌ ՔԱԹԻՊԱ ԵՒ ՄԻՔԱՅԷԼ ՆԱԼՊԱՆՏԵԱՆԻ

ԾՆՆԴԵԱՆ ՀԱՐԻՒՐԱՄԵԱԿԻՆ ԱՌԹԻՒ

կազմակերպուած Հ. Յ. Դ. Լիոնի Պատ. միութեան կողմէ
Հովանաւորութեամբ Հ. Յ. Դ. Լիոնի կոմիտէի
եւ մասնակցութեամբ ազգ. միութիւններու

*Այս Շբ. իրիկուն ժամը 8.30ին Գ. Թաղապետարանի սրահին մէջ*

կը նախագահէ Ա. ԱՆԹԻՔԱՃԵԱՆ, կը խօսին ընկերներ Ա. Չուլլէրեան եւ Արամ Գառօնէ, գեղարուեստական ճոխ բաժին,

*ՄՈՒՏՔԸ ԱԶԱՏ Է*

---













---

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

*Զ. Ե. Ո. Միութեան Փարիզի մասնաճիւղին դասախօսական ժողովը այսօր Հինգշաբթի իրիկուն ժամը 9ին Ֆլօրիայի մէջ։ Կը խօսի Պ. Օհան Կարօ, նիւթ ունենալով աշուղ Սայաթ Նովան։ Մէկ ժամ սինէմա։*

*ԱՆԻԷՌ Պուա Քօլօմպի Զ. Ե. Ո. Միութեան ժողովը վաղը Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին ծանօթ հաւաքատեղին։*

*ՍԻՓԱՆ երգչախումբի փորձը վաղը Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին 71 Ave. Kléber.*

*ԱՏԱՓԱԶԱՐԻ Հայր. Միութեան ընդհամական ժողովը այս Կիրակի ժամը 2.30ին, 40 rue de Belleville-ի սրճարանին վերնայարկը։ Կը հրաւիրուին բոլոր հայրենակիցները։ Ներկաներուն թիւը մեծամասնութիւն պիտի համարուի։*

### ԳՐԱԿԱՆ ԱԿՈՒՄԲ

*Վաղը իրիկուն ժամը 8.30ին* 71 Ave. Kléber. *Կը խօսի Բժ. Աժատեան, «Հեղինակները եւ մտային հիւանդութիւնները»։*

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— կը փնտռուին գօնեայի գաղթականներէն Ղազէր աղա Թէլփէեան (ապուխտագործ) իր քեռայրը գալայճը խաչէր աղա խաչատուրեանի զաւակները Յակոբ եւ Եղիա 20 եւ 25 տարեկան, քոյրերնին տիկին Էլիզա 35 տարեկան, որոնք մինչեւ 1921 գօնիա կը գտնուէին ու կարծուի թէ այժմ Յունաստան կամ Սուրիա կը գտնուին։ Իմացնել դեղագործ Յակոբ խաչատուրեանի, 159 Rue Pierre Corneille, Lyon, France. Լուր տուողին նուէր,

կը խնդրուի արտասահմանի թերթերէն արտատպել։









---

Հ. Յ. Դ.

*ՓԱՐԻԶ*

*Կ. ԿՈՄԻՏԷՆ ժողովի կը հրաւիրէ Փարիզի եւ շրջանի կոմիտէներու ներկայացուցիչները այսօր Հինգշաբթի իրիկուն ժամը 8.30ին «Յառաջ»ի խմբագրատունը։*

*ԲՈԼՈՐ կոմիտէներէն եւ խումբերէն կը խնդրուի իրենց մօտ գտնուած Հ. Յ. Դ. Քառասնամեակի տոմսերը վերադարձնել ընկ. Գեւոնեանի ամենաուշը այս Շաբաթ իրիկուն մինչեւ ժամը 7։*

*ԱՂԲԻՒՐ-ՍԵՐՈԲ խումբի ժողովը այս Շաբաթ իրիկուն ժամը 9ին սովորական հաւաքատեղին։ Պարտաւորիչ ներկայութիւն։*

*ԳԱՒԱՌ*

*ԼԻՈՆԻ Պատ. միութեան ընդհանուր ժողովը այսօր Հինգշաբթի իրիկուն ժամը 8.30ին Գրադարանի սրահը՝ Խիստ կարեւոր օրակարգ։*

*ՄԱՐՍԷՅԼԻ Պուլվառ Օտտօի Վռամեան ենթակոմիտէի դասախօսութիւնը այս Կիրակի ժամը 5ին։ Կը խօսի ընկ. Ա. Մարտիրոսեան։*

*ՄԱՐՍԷՅԼԻ Ս. Անթուանի Ընկ. Կարօ խումբի դասախօսութիւնը այս Կիրակի ժամը 5ին։ Կը խօսի ընկ. Հ. Սէրէնկիւլեան։*

*ՄԱՐՍԷՅԼԻ Ս. Լուի Ակնունի ենթակոմիտէի դասախօսութիւնը այս Կիրակի ժամը 3ին։ Կը խօսի ընկ. Մ. Մարութեան։ Կը հրաւիրուին Ս. Մարկրիթի ընկերները։*

*ՄԱՐՍԷՅԼԻ Ս. Լուի Ակնունի ենթակոմիտէի ընդհ. ընկերական ժողովը վաղը իրիկուն ժամը 8.30ին։ Ներկայ կ'ըլլայ կոմիտէն։*

*ՄԱՐՍԷՅԼԻ շրջ. կոմիտէն դասախօսական ժողովի կը հրաւիրէ Մարսէյլ քաղաքի Քրիստափոր, Ռոստոմ եւ Իշխան ենթակոմիտէներու բոլոր ընկերները այս Կիրակի ժամը 3ին, սովորական վայրը։ Կը դասախօսէ ընկ. Բ. Միլտոնեան*

*ՄԱՐՍԷՅԼԻ Իշխան ենթակոմիտէի ժողովը այս կիրակի երեկոյ ժամը 8ին ծանօթ հաւաքատեղին։*

### ԱԶԴ

*Յառաջիկայ Յունուարի սկիզբները, Փարիզի մէջ, Տօքթ. Միհրան Կ. Քէչիշեանի խմբագրութեամբ, պիտի հրատարակուի «Առողջ Կեանք» անունով բժշկա-առողջապահական ամսագիր մը, որուն իրենց աշխատակցութիւնը պիտի բերեն հայ եւ օտար բժիշկներ ու գրագէտներ։ «Առողջ Կեանք» երեւան պիտի գայ ընդարձակ բայց իրագործելի ծրագրով մը, նպատակ ունենալով տարածել մեր մէջ ընդհանուր առողջապահութեան օրէնքները, ուսուցանել բազմաթիւ հիւանդութիւններէ զգուշանալու միջոցները, տալ տնական բժշկութեան եւ տնական դեղարանի յատուկ ծանօթութիւնները, զբաղուիլ նաեւ գեղեցկագիտական առողջապահութեամբ որ խորապէս կը հետաքրքրէ տիկիններն ու օրիորդները, տալով այս առթիւ խնամքով պատրաստուած ուսումնասիրութիւններ, որոնց հետեւելով միշտ կարելի է երկար ատեն անվթար պահել ֆիզիքական գեղեցկութիւնը եւ աւելցնել մարմնական շնորհն ու հրապարոյրը, կամ գայն ձեռք ձգել։*

*Ամսագիրը, պիտի ունենայ նաեւ գիտական բաժին մը դիւրահասկնալի հետաքրքրական եւ օգտակար։*

*Բաժանորդագրութեան պայմաններն են.*

*40 ֆրանք, Ֆրանսայի, Սուրիոյ, Թուրքիոյ եւ Պալքաններու համար։ 2 տոլար Միացեալ երկիրներու համար։*

*Թղթակցութիւն, յօղուած, դրամ ղրկել միայն հետեւեալ հասցէին.*

Dr. Mihran G. Kechichian, 9 Rue Victor-Cousin Paris (5e)

---
















IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H STEPAHN

# ՕՐԸ ՕՐԻՆ

## Փակուած Ֆրանսական Խորհրդարանը

Ծնունդի տօնին առթիւ, ֆրանս. Ծերակոյտի եւ Երեսփ. Ժողովի նիստերուն դադար տրուեցաւ: Փակման հրովարտակը Երեսփ. Ժողովին մէջ կարդաց վարչապետը՝ Պ. Սթէկ, իսկ Ծերակոյտին մէջ՝ դատական նախարար Պ. Շէրոն:

Նստաշրջանը պիտի վերաբացուի յունուար 13ին, մինչ այդ, վարչապետը պիտի ջանայ երեք հրաժարած նախարարներուն տեղ նորեր նշանակել:

## Ատանայի 18 գիւղեր ջուրին տակ

Ատանայի հեղեղին մասին հետեւեալ մանրամասնութիւնները կը տրուին:

Երեք օրէ տեղացող անձրեւներուն հետեւանքով, Սիհան գետը յորդեցաւ: Բազմաթիւ թաղեր ամբողջութեամբ ջուրին տակ են: Թաշքէօփրիւի կողմի տուները կղզիացած վիճակ մը ունին: Վնասներուն չափը շատ մեծ է:

Ողողուած 18 գիւղերէն դեռ ոչ մէկ լուր առնուած է: Գարշրեագայի մէջ ջուրը շատ բարձրացած է. այն տեղի հիւանդանոցին հիւանդները նաւակներով ուրիշ տեղ փոխադրուած են:

Ջուրէն քշուած 7 հոգի եւ հիւանդանոցին մէջ ալ տղեկ մը խեղդուած են: Անձրեւներուն սաստկութենէն բազմաթիւ տուներ փլած են: Գիւղերուն հետ հեռագրական հաղորդակցութիւնը բոլորովին խզուած է, թելերը խորտակուած ըլլալով: Եօթ—ութ հարիւր հոգի բացը մնացած են: Թաղապետութիւնը կ'աշխատի աղէտեալները բաղնիքներուն մէջ զետեղել եւ զանոնք պարենաւորել՝ Կարմիր Մահիկին օգնութեամբ:

Ողողուած թաղերու բնակիչներէն բազմաթիւ թշուառներ ժամերով ծառերու գագաթը սպասած են մինչեւ որ մէկիկ մէկիկ ազատուած են նաւակներով: Անձրեւը կը շարունակուի: Թուրք Օճախին կողմերն ալ ողողուած են:

Կ'ըսուի թէ մեծ հեղեղ մը իջած է նաեւ Գոզանի մէջ: Մերսինի շատ մը փողոցներն ալ ջուրի տակ մնացած են: Այնտեղ ալ անձրեւը կը շարունակուի:

Ատանայի եւ Պոլսոյ միջեւ հեռագրական հաղորդակցութիւնը խզուած ըլլալով, հեռագրալուրերը Տիարպէքիրի ճամբով եկած են:

Վնասներու քանակը շատ է, դեռ կարելի չէ եղած ճշտել: Բերքը փճացած կը նկատուի:



## ՄԱՍՆԱԿՑԵՑԷՔ Հ. Յ. Դ. ՔԱՌԱՍՆԱՄԵԱԿԻՆ,

### ՓԱՐԻԶԻ ՄԷՋ ԿԸ ՏՕՆՈՒԻ

Այսօր կիրակի երեկոյ Salle Gaveauի մէջ

47 rue de la Boëtie, մեթրօ՝ Miromesnil

ՆԱԽԱՁԵՌՆՈՒԹԵԱՄԲ Հ. Յ. Դ. ԵՒՐ. ԿԵԴՐ. ԿՈՄԻՏԷԻ

Նախագահական մարմին՝ Ա. ԳԻՒԼԽԱՆՏԱՆԵԱՆ, Ռ. ՏԷՐ ՄԻՆԱՍԵԱՆ, Շ. ՄԻՍԱՔԵԱՆ, Ս. ՎՐԱՑԵԱՆ, Ա. ՋԱՄԱԼԵԱՆ, Մ. ՎԱՐԱՆԴԵԱՆ, Բժիշկ Տէր ԹԱՒԹԵԱՆ, Լ. ԹԱԴԷՈՍԵԱՆ, Կ. ՍԱՍՈՒՆԻ, Մ. ԵՐԻՑԱՆՑ, Լ. ԳԵՒՈՆԵԱՆ, Լ. ՄՕՁԵԱՆ, Ս. Տէր ԹՈՎՄԱՍԵԱՆ, Մ. ԳՈՒՅՈՒՄՃԵԱՆ, Վ. ՇՈՒՇԱՆԵԱՆ, Ս. ՆԱՒԱՎԱՐԵԱՆ, Վ. ՓԱՍՏՐՄԱՃԵԱՆ:

Կը նախագահէ՝ Ա. ԱՀԱՐՈՆԵԱՆ

կը խօսին՝ Մ. ՎԱՐԱՆԴԵԱՆ, Ա. ՋԱՄԱԼԵԱՆ, Մ. ԳՈՒՅՈՒՄՃԵԱՆ

ԿԸ ԽՕՍԻՆ ԸՆԿԵՐՎԱՐԱԿԱՆ ՄԻՋԱԶԳԱՅԻՆԻ ԳՈՐԾԱԴԻՐԻ ԱՆԴԱՄՆԵՐԷՆ

PIERRE RENAUDEL, ՎԱՌԻ ԵՐԵՍՓՈԽԱՆ ԵՒ JEAN LONGUET, ՆԱԽԿԻՆ ԵՐԵՍՓՈԽԱՆ

Գեղարուեստական բաժնին կը մասնակցին Տիկիններ ԶԱՊԷԼ ԱՐԱՄ, ԻԴԱ ԱՐԴ ՂՈՒԿԱՍԵԱՆ, Ա. ԳԵՒՈՆԵԱՆ, Օր. ԱՂԱԲԷԿԵԱՆ, Պ. Պ. Ն. ՂՈՒԿԱՍԵԱՆ, ՆԱՒԱՍԱՐԴԵԱՆ (երգ), Օր. Ա. ԵՐԱՄԵԱՆ (ջութակ): Օր. ԱՐՏԵՄԻՍ ՏԷՐ ԹՈՎՄԱՍԵԱՆ, Պ. Պ. Ս. ԹՈՐՈՍԵԱՆ, Շ. ՍԱՐԵԱՆ արտասանութիւն:

G. MARTINET (թաւջութակ) Ա. մրցանակ փարիզի պետական երաժշտանոցէն
S. MARTINET (ալթօ) » » » » »
N. LEICKNAM (ջութակ) » » » » »
J. CACHEUX (դաշնակ) » » » » »

S. MARTINET պիտի նուագէ H. Büsserի «Rapsodie Arménienne»ը հայ ժողովրդական մօթիֆներով կտոր մը որ իբր նիւթ տրուած էր պետական երաժշտանոցի այս տարուան մրցումներուն:

Կը մասնակցի ՍԻՓԱՆ երկսեռ երգչախումբը ղեկավարութեամբ ՍԱՔՕ ՅԱԿՈԲԵԱՆԻ

Ծխելը արգիլուած է: Մինչեւ 7 տարեկան տղոց մուտքը արգիլուած է

ՀԱՆԴԷՍԸ ԿԸ ՍԿՍԻ ԺԱՄԸ ՃԻՇԴ 8.30ԻՆ

ՀԱՂՈՐԴԱԿՑՈՒԹԵԱՆ ՄԻՋՈՑՆԵՐ.— Հանրակառք թիւ 26, 28, 37 եւ 41: Օթօպիւս՝ AT. ATbis, AH, AQ, B, AB, իջնել ruc la Boétie.

Կարգապահութեան հսկող ընկերներէ կը խնդրուի ներկայ ըլլալ ժամը 6ին Salle Gaveau




IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS

208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H STEPHAN

Միւս կողմէ, լաւատեղեակ շրջանակներ կը յայտնեն թէ նոր դահլիճը իր գլխաւորութեամբ կազմելու մասին՝ տակաւին որոշում չէ տուած Վենիզելոս։

Ընդդիմադիր մամուլը դիտել կու տայ թէ ներկայ տագնապը ներքին Նախարար Սիտէրիսի հրաժարման հետեւանքն է։ Նախարարը, ինչպէս կը յիշուի հրաժարած էր հացին գինը ճշդելու համար կազմուած յանձնախումբին մէջ երեւան ելած գայթակղութեան հետեւանքով։

Կը կարծուի թէ, ամէն պարագայի մէջ, ինչ որ ալ ըլլայ ապագայ դահլիճին կազմը, արտաքին Նախարարը Միխալաքոփուլոս պիտի պահէ իր պաշտօնը։

## Հակակրօնական կատաղի պայքար

Ծննդեան տօներուն առթիւ, բոլշեւիկեան կառավարութիւնը սաստկացուցած է հակակրօնական պայքարը։ Խորհրդային բոլոր թատրոնները կու տան հակակրօնական ներկայացումներ։ Բազմաթիւ դպրոցներու մէջ, կրօնքի դէմ յատուկ դասընթացքներ հաստատուած են։ Լուսաւորութեան գործավարը տեղական բոլշեւիկ կոմիտէներուն ղրկեց հրահանգներ, որոնց համաձայն անոնք պարտաւոր պիտի ըլլան ստուգել ուսուցիչներու կրօնական ըմբռնումները եւ պաշտօնէ զրկել բոլոր անոնք որոնք հրաժարած չեն կրօնական ամէն հաւատալիքէ։

## Բոլոր աշխարհի նաւազներ, միացէ՛ք...

Խորհրդ. մամուլը կ'արտատպէ ամբողջ աշխարհի նաւազներուն ուղղուած կոչ մը, որով հրաւէր կ'ուղղուի կազմակերպելու յեղափոխական կոմիտէներ եւ մտնելու անոնց մէջ։ Այդ կոմիտէներուն գործը պիտի ըլլայ հսկել որ պատերազմական նիւթեր չուղարկուին Լեհաստան, Ռումանիա եւ առհասարակ Ռուսիոյ բոլոր սահմանակից երկիրները։

Կոչը կը յիշատակէ 1918ին Օտեսայի առջեւ, Սեւ ծովու մէջ՝ ֆրանսացի նաւազներու ըմբոստութիւնը եւ կը թելադրէ ուժեղացնել համայնավար քարոզչութիւնը ֆրանսական նաւատորմին մէջ։

## Ստալին կը մաքրագործէ

ՄՈՍԿՈՒԱ, 21 դեկտ.— Բոլշեւիկեան հեռագրական գործակալութիւնը կը յայտնէ թէ համայնավար հակակշռի կեդր. յանձնախումբին եւ գործադիր կոմիտէին խառն ու լիակատար նիստերը տեղի ունեցան դեկտ. 17էն 21։ Տրուած որոշումներուն հետեւանքով, Քաղաք. Դիւանի անդամակցութեան իր պաշտօնէն հանուեցաւ Ռիքով։ Խորհր. Միութեան գործավարներու խորհուրդին Նախագահ նշանակուեցաւ Մոլոթով, որ ձգեց կեդր. կոմիտէի քարտուղարութեան եւ կազմակերպչական դիւանի անդամակցութեան իր պաշտօնները։

## Անկից յետոյ գաղտնի պիտի պահեն

Լեհական թերթերու կողմէ տրուած լուրերու համաձայն, Կէփէուն հրահանգ տուաւ բոլոր բոլշեւիկեան թերթերուն, ամենեւին ոչինչ գրել մահապատիժներու գործադրութեան մասին։ Մահավճիռները այն ատեն միայն հրատարակութեան պիտի տրուին, երբ դատապարտեալները ներման արժանանան։

## Սեւ ծովու մէջ կ'ըմբոստանան

ՊՈԼԻՍ, 21 Դեկտ.— Օտեսայէն ստացուած լուրերու համաձայն, «Փրոֆինթէրն» ռուսական յածանաւուն նաւազները ըմբոստացած եւ փորձած են ըմբոստացնել նաեւ Սեւ ծովու նաւատորմին նաւազները։

Այս փորձերը ձախողութեան մատնուած են անմիջապէս ձեռք առնուած շատ խիստ ու կտրուկ միջոցներու հետեւանքով։

## Հակաֆաշիստական խլրտումներ

Իտալական կառավարութեան պաշտօնական մէկ ցեկոյցը վերջերս կը հաղորդէր թէ հակաֆաշիստական գործունէութեան համար, բազմաթիւ անձեր ձերբակալուած են։ Այս առթիւ, փարիզեան թերթ մը դիտել կու տայ թէ, Հռոմի կառավարութեան զեկոյցէն յայտնի կ'ըլլայ որ հակաֆաշիստական գործունէութիւնը զսպելու դիտումով, կազմուած յատուկ սպասարկութիւն մը կայ որ կցուած է ընդհ. ապահովութեան։

Այս սպասարկութեան գլուխը կը գտնուին բարձրաստիճան պաշտօնատարներ, որոնք իրենց տրամադրութեան տակ ունին, ոչ միայն իսկական լրտեսներ եւ գործակալներ, այլեւ ընկերային բոլոր խաւերուն պատկանող լրատուներ։ Ասոնց մէջ կան, բժիշկներ, փաստաբաններ, լրագրողներ դրամատան եւ վաճառատան պաշտօնեաներ, դռնապաններ, որոնք կը մտնեն բոլոր շրջանակները եւ ընդհ. ապահովութեան իմաց կու տան ինչ որ կը խօսուի եւ կը կատարուի։

Գալով վերջերս ձերբակալուած ազատական կուսակցութեան անդամներուն, անոնք միապետական եւ կաթոլիկ ըմբռնումներու տէր անձեր են, որոնք կը հետապնդեն ֆաշիստ մենատիրութեան անկումը եւ Իտալիոյ մէջ խորհրդարանական կարգերու հաստատումը։ Անոնք ամբաստանուած են ֆաշիզմի դէմ հրատարակութիւններ բրած ըլլալու յանցանքով։

Ուրիշ ձերբակալումներ եւս կատարուած են Սարտենիայի մէջ, ուր իբր թէ օդանաւ մը հակաֆաշիստական թռուցիկներ է նետած։



## Հ. Յ. Դ.

ՓԱՐԻԶ

ԱՌՆՈՒՎԻԼ-լէ-կոնէսի բոլոր ընկերները ժողովի կը հրաւիրուին վաղը Չորեքշաբթի իրիկուն ժամը 8.30ին Rue du Parc ընկեր Յ. Խաչատուրեանի տունը՝ Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է։

ԻՇԽԱՆՈՒՀԻ ՍԱԹԵՆԻԿ ԱՐՂՈՒԹԵԱՆԻ մահուան առթիւ, Փարիզի Հայ Արինուշները Իշխան Բ. Արղութեանէ եւ Պ. Տիգրան Բէկզատեանէ ստացած են 50ական ֆրանք, փոխան ծաղկեպսակի



### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Այրի Տիկին Ռօզ Ս. Գանձեան եւ զաւակը Պ. Ապրօ եւ իրենց պարագաները խորին շնորհակալութիւն կը յայտնեն գեր. վռամշապուհ եպսկ.ի եւ ամէն անոնց որոնք անձամբ կամ գրաւոր ցաւակցութիւն յայտնեցին

ԱՏԱՄՆԱԲՈՅԺ
ՍԱՀԱԿ ԳԱՆՁԵԱՆԻ

դառնաղէտ մահուան առթիւ որուն յուղարկաւորութիւնը կատարուեցաւ դեկտ. 19 Ուրբաթ օր Փարիզի Հայոց եկեղեցիին մէջ։ Արարողութեան կը նախագահէր վռամշապուհ սրբազան։




IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H STEPHAN


### ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Քորֆուէն Ովաննա Գայաեան կը փնտռէ իր երկու եղբայրները՝ Աւետիս եւ Յարութիւն Գայաեանները, մեծը 20 տարեկան, պզտիկը՝ 17, որոնք ասկէ երկու-քուկէս տարի առաջ Յունաստանէն Ֆրանսա եկած են։ Տեղեկութիւն ունեցողներէն կը խնդրուի իմացնել ցառաջի միջոցաւ Հրանտ Սրապեանի։

— կը փնտռուի կարապետ Շահինեան։ կը կարծուի թէ Պէյրութի որբանոցներուն մէջ կը գտնուի։ իմացնել իր եղբօր Մկրտիչ Շահինեանի, Ferme de Coinville, Aubrié, Mthe et Moselle, France.

*Այս առթիւ երեւան ելած են նաեւ ուրիշ կուսակցութիւններու մէջ եղած կազմակերպութիւններ ու համայնավարներու անուններ: Այս կուսակցութեանց ոստիկանութիւններուն լուր տրուած է հեռագրով: Իսկիշէհիրի մէջ ձերբակալուած համայնավարները զանազան հաստատութեանց մէջ պաշտօնավարող մեքենավարներ են:*

## Ծրագիրներ Սուրիոյ համար

Սուրիոյ ֆրանսական մարզպանը Պ. Փօնսօ որ Փարիզ կը գտնուէր, իր հետ տարած է զանազան ծրագիրներ Սուրիոյ բարգաւաճման համար: Առաջին կարգին վրայ կը գտնուին երկաթուղագծերու շինութիւններ, որոնք մօտ 500 միլիոն ֆրանք պիտի արժեն. գիծ մը Թրիբոլի-Նաքորա, Թրիբոլի-Հօմս, Բալմիր Տէրզօր, եւ այլեւայլ ոռոգման աշխատութիւններ: Ասոնք իրագործելու համար, Մարզպանը խորհրդակցութիւններ կը կատարէ Սուրիոյ պատուիրակներուն հետ:

## Համայնավարներու դատավարութիւնը

Սուրիոյ այլեւայլ քաղաքներուն մէջ ձերբակալուելով Պէյրութ փոխադրուած համայնավարներու թիւը կը հասնի 20ի որոնք ձերբակալուած են լուրջ հիմերու վրայ: Ասոնք վերջերս դիմում ըրած էին ընդհ. դատախազին երաշխաւորութեամբ ազատ արձակուելու համար. սակայն մերժուած են:

Քննութիւնները հաստատած ենթէ Պէյրութի, Հալէպի եւ Դամասկոսի մէջ գոյութիւն ունին համայնավար բջիջներ, կեդրոն ունենալով Պէյրութը: Ծախքերը կը ղրկուէին Վիէննայէն:

Ըստ «Լ'Օրիան»ի Պէյրութի համայնավար կեդրոնը գտնուած է վրանաքաղաքին մէջ եւ անդամներու մեծ մասը գաղթականներ են:







ՏԻԿՆԱՆՑ ՄԻՈՒԹԵԱՆ ՄԱՍՆԱՃԻՒՂԵՐՈՒՆ ՄԻԱՑԵԱԼ

ՀԱՆԴԷՍԸ

Փարիզի Հայ Տիկնանց Միութեան Որբերու Օգն. եւ Հ. կ. խաչի Օգն. մասնաճիւղերը միացեալ հանդէս մը կազմակերպած են 4 յունուար 1931, կիրակի ժամը 2ու կէսին Salle de Géographieի մէջ, 184 Bld. Saint Germain.

Այս հանդէսին մէջ Որբերու Օգն. Մասնաճիւղը մրցանակներ պիտի տայ այն հայ դպրոցականներուն, որոնք վերջին երկու դպրոց. տարեշրջաններուն իրենց յաճախած վարժարաններուն մէջ առաջնութիւն շահած են:

Իսկ Հ.Կ.Խաչի Օգն. Մասնաճիւղը մրցանակներ պիտի բաշխէ այն մայրերուն, որոնց կաթնկեր մանուկները' յետ բժշկական քննութեան գտնուած են մաքուր եւ առողջ:

*Կը հրաւիրուին անխտիր բոլոր Հայերը: ՄՈՒՏՔԸ ԱԶԱՏ Է: Կը խնդրուի ճշդապահ ըլլալ:* (կնիք)

ԹԷՅԱՍԵՂԱՆ

Վալանսի Սէօլէօզցիներու «Արեւելք» Հայր. Միութեան կողմէ, 18 րիւ Պիւֆիի, Պ. Գարաճեանի սրճարանը: Դեկտ. 27 շաբաթ երեկոյեան ժամը 7ին: Արտասանութիւններ փոքրիկներու կողմէ, մեներգ, խմբերգ, նուագ, հայկական եւ եւրոպական պարեր: Մուտքը ազատ է:








IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS

208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H. STEPHAN


## Երեկոյթ - պարահանդէս

*կազմակերպուած Հ. Մ. Ը. Մ.ի Իթալիի մասնաճիւղին կողմէ 27 Դեկտ. Շաբաթ իրիկուն,* Salle Renard*ի մէջ,* 12 Rue Renard

*Կը նախագահէ՝ Պ. ԳԱՌՆԻԿ ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆ*

*Գեղարուեստական բաժնին կը մասնակցին Օր. Լ. Ազապէկեան (երգ), Պ. Վ. Տէվէճեան (երգ), Պ. Վ. Քնարեան՝ իր* créations*ներով, Պ. Զ. Ղարիպեան (արտասանութիւն):*

*Թատերական ճոխ բաժին: Կովկասեան եւ հայկական երգախառն պարեր Պ. Առաքելեանի կողմէ ընկերակցութեամբ Թառիստ Աբգարի: Մեծ քօթիյեօն: Ճոխ պիւֆէ:*

Abel'sCand orchestra.

*Մուտք այրերու 10 ֆր., կիներու 7.50 ֆր.*

ԵՐԵԿՈՅԹ

կազմակերպուած Շավիլի երիտ. երկսեռ միութեան կողմէ 27 դեկտ. Շաբաթ գիշեր ժամը 8.45ին Ciné Patinի սրահին մէջ

ԿԸ ՆԵՐԿԱՅԱՑՈՒԻ ԵՐԿՈՒ ՋԱՒԵՇՏՆԵՐ

*Գեղարուեստական ճոխ բաժին, հայկական պար գեղջկական տարազով:*

*Իջնել թիւ 1 հանրակառքով* Ancienne Mairie

*Մուտք 4 ֆրանք*

ՓԱՐԻԶԱՀԱՅ ՏՐԱՄԱԹԻՔ ԹԱՏԵՐԱԽՈՒՄԲԸ

*17 Յունուար Շաբաթ գիշեր*

*կը ներկայացնէ՝* ԱՐՇԻՆ ՄԱԼ ԱԼԱՆ

Պատրաստուեցէք այս աննախընթաց երեկոյթին

Մանրամասնութիւնները մօտ օրէն

ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ ԵՒ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

կազմակերպուած Տէսինի Զմիւռնիոյ Նահանգ. Հայրենակցական միութեան կողմէ: Այս կիրակի ժամը 2ին, իսկ ժամը 8ին պարահանդէս Սօսիէթէ Լիոնէզի ճաշասրահին մէջ:

*կը ներկայացուի՝* ՋԱՐ ՈԳԻՆ

Ղեկավարութեամբ դերասան Ժ. Զուլֆիեանի եւ մասնակցութեամբ Պ. Լ. Ղարիպեանի: Օր. Արմէն Շիրինեան դաշնակի վրայ պիտի նուագէ միջնարարներուն հայկական եւ եւրոպական կտորներ: Ժազ եւ Օրքէսթր ղեկավարութեամբ Պօզարոֆի: 20 հայ օրիորդներ հայկական տարազներով պիտի պարեն հայկ. պարեր:

Մուտք՝ ներկայացման համար 5 ֆր., պարահանդէսի՝ այր եւ կին 3 ֆր. առանձին 2 ֆրանք:

ԹԱՏԵՐԱ — ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

*Կազմակերպուած Սեբաստիոյ Գօչհիսարի Հայր. Միութեան կողմէ: Այսօր Հինգշաբթի իրիկուն ժամը 8.30էն մինչեւ առաւօտ Փըթի Ժուռնալի սրահին մէջ, 21* rue Cadet. Métro Cadet.

կը նախագահէ ՍՈՒՐԷՆ ՓԻԼԻԿԵԱՆ

*կը ներկայացուի՝* ՍԵՒ ՀՈՂԵՐ

Եւրոպական եւ հայկական պարեր, երգ, նուագ, արտասանութիւն եւ ընտիր ժազ:

Տոմսերու գիներն են՝ 10 եւ 7.50 ֆրանք:

## Հ. Յ. Դ.

*ԳԱՒԱՌ*

ՆԻՍԻ շրջանային կոմիտէն ժողովի կը հրաւիրէ Փօն Մայեանի շրջանի ընկերները այս իրիկուն ժամը 8ուկէսին ընկ. Ե. Խաչատուրեանի բնակարանը: Կարեւոր օրակարգ:

ԼԻՈՆԻ Կուկունեան խումբէ ժողովավայրը իրիկուն ժամը 8ին գրադարանի սրահը: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է:

## ՑՈՒՇԱՏԵՏՐ

ԱՆԻԷՌ - Պուա Քոլոմպի Զ. Ե. Ռ. Միութեան ժողովը այս Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին ծանօթ հաւաքատեղին: Օրակարգ՝ հաշուետուութիւն եւ Նոր վարչութեան ընտրութիւն:

ՄԱՐՍԷՅԼԻ Բիւթանական Հայր. Միութեան առժամեայ վարչութիւնը ստանձնած ըլլալով Միութեան (որ 1924էն ի վեր գրեթէ կազմալուծուած է), վերակազմութիւնը կը խնդրէ Մարսէյլի եւ շրջակայքի բիւթանացի բոլոր հայրենակիցներէն ներկայ գտնուիլ ընդհանուր ժողովին ուր տեղի պիտի այս կիրակի ժամը 9ին Պար տը լա Փոստի մէջ, 2 րիւ Քորպիէր: Ներկաներու թիւը մեծամասնութիւն պիտի համարուի:

ՑԱՒԱԿՑՈՒԹԻՒՆ

Հ. Յ. Դ. Վալանսի կոմիտէն, իր ընկերներէն *ԱՆԴՐԱՆԻԿ ՓԱՓՈՒՃԵԱՆ*ի մահուան առթիւ, իր ցաւակցութիւնները կը յայտնէ ազգականներուն եւ պարագաներուն:

մասնաճիւղերուն կողմէ, հակառակ լուծման հրահանգին զայն վերակազմելու ճիգերը տուն տուին կառավարութեան ծայր աստիճան կորովի հակայարձակման։

Ամբողջ Թուրքիոյ մէջ, ձեռնարկուած է այդ կուսակցութեան անդամները ձերբակալելու։ Ամէն տեղ խուզարկութիւններ կը կատարուին։

Ատանայի մէջ, վերջերս կազմուած «էհալի» կուսակցութեան բոլոր անդամները ձերբակալուեցան։

Ամենափոքր պատրուակներով, ընդդիմադիր թերթերը կը հետապնդուին կամ կը խափանուին։

Պոլսոյ մէջ «Եարըն» թերթի խմբագիրը որ բուռն պայքար մղեր էր կառավարութեան դէմ, բանտարկուեցաւ։ Իզմիրի մէջ, որոշ գումարներու փոխարէն, կառավարութիւնը ապահոված է ընդդիմադիր թերթերու չէզոքութիւնը։

Կը հաւաստուի թէ Ազգ. ժողովին 316 անդամներուն մէջ, միայն 3 երեսփոխաններ կան, որոնք տակաւին կը յամառին պայքարիլ կառավարութեան դէմ։

### Թրքուհիները երեսփոխան

Թրքուհիները որոնցմէ շատեր վերջին ընտրութիւններու ընթացքին, ընտրուեցան թաղապետական խորհուրդի անդամ, հաւանաբար պիտի կրնան ընտրուիլ Ազգ. ժողովի անդամ։

Կառավարութիւնը օրինագիծ մը ներկայացուցած է Ազգ. ժողովին, պահանջելով որ կիները կարենան յառաջիկայ երեսփոխանական ընտրութեանց առեն, իրենց թեկնածութիւնը դնել։

### Հնդկաստանի խռովութիւնները կը շատնան

Լոնտոն ստացուած լուրերու համաձայն, Պիրմանիոյ խռովութիւնները աւելի ծանր էին, քան ինչ որ ցոյց կուտային նախորդ լուրերը։ Ըմբոստները որոնց թիւը հազարի կը հասնի, սկսան յարձակում գործելով Սոորին-Պիրմանիոյ մէջ՝ Թարրա Վատի մէկ գիւղին վրայ։ Սպաննեցին գիւղին երեւելիները եւ կողոպտեցին բնակարանները։ Այս կերպով էր որ սպաննեցին անտառներու վարչութեան քննիչը՝ մեկուսացած բնակարանի մը մէջ՝ ուր կը յուսային գտնել զէնք եւ փամփուշտ։ Անկից յետոյ, անոնք կրկնեցին իրենց սխրագործութիւնները զանազան վայրերու մէջ՝ որոնք կը գտնուէին անտառին եզերքները։

Ըմբոստներուն պետը՝ կը թուի թէ զինուորական գործողութեանց մէջ մեծ փորձառութիւն ունեցող մէկն է, որուն ինքնութիւնը անծանօթ կը մնայ։ Կառավարական երկու զօրագունդեր, որոնց կ'օժանդակեն ոստիկանական ուժեր, արդէն հասած են Թարրա Վատի։ Զանազան բախումներու ընթացքին, սպաննուած ըմբոստներու թիւը կը գնահատուի 100։ 50ի չափ գերիներ կան։

### ՄԱՐԱՋԱԽՏ ԺՕՖՌ ՄԱՀԱՄԵՐՁ

Մարաջախտ Ժոֆռ, Մառնի յաղթականը, մահամերձ է։ Դեկտ. 19ին վիրաբուժական գործողութեան ենթարկուած էր, և կտրեցին աջ ոտքը։ Միւսն ալ պիտի կտրէին, բայց վիճակը անյոյս ըլլալով, ետ կեցան եւ նախկին սպարապետը կը ճիջի յամրաբար։













ԿԱՂԱՆԴԻ ԳԵՂԵՑԿԱԳՈՅՆ ՆՈՒԷՐ ՄԸ

## ԼԵՌՆԵՐ եւ ՁՈՐԵՐ

ՏԱՐԵԳԻՐՔԻ Ա. ՏԱՐԻՆ 1931

Մեծադիր, պատկերազարդ եւ ճոխ բովանդակութեամբ

Խմբագրութիւն՝ Մ. եւ Մ. ՊԱՐՍԱՄԵԱՆ

Գինը՝ Ֆրանսա, Սուրիա, Պալքաններ եւ Թուրքիա 40 ֆրանք. Ամերիկա, Անգլիա, Եգիպտոս եւ Պարսկաստան 2 տոլար։

Դիմել ընդհանուր հասցէին, «Chanth», Arts et Lettres, 94 rue Lafayette, Paris (10e). կամ L. Kévonianի, 235 Fbg. St. Martin, Paris (10e).



## Հ. Յ. Դ.

ԳԱՒԱՌ

ԼԻՈՆԻ կայծակ խումբի ժողովը վաղը իրիկուն ժամը 8.30ին Հ. Յ. Դաշնակցութեան գրադարանը։

ՄԱՐՍԷՅԼԻ Պատ. միութեան ընդհ. ժողովը այս Հինգշաբթի ժամը 2ին Գրադարանին մէջ. Օրակարգ՝ Նոր վարչութեան ընտրութիւն։

Նոր տարուան առթիւ Մարսէյլի Հ. Յ. Դ. Պատ. միութիւններու խնջոյքը այս Հինգշաբթի ժամը 4ին 63 րիւ տը լա Րէփիւպլիք Գրադարանին մէջ, կը հրաւիրուին քաղաքի, Սէն Լուի, Պուլվ. Օտտօի մասնաճիւղերու բոլոր անդամները եւ պատանի համակիրները։

ԵՐԵԿՈՅԹ-ՏՕՆԱԾԱՌ

Ա. Ե. Հ. Կ. Խաչի Տէսինի մասնաճիւղին կողմէ կաղանդի առթիւ, վաղը Դշ. իրիկուն ժամը 6—12 S. L. S. A.ի ճաշասրահին մէջ, երգ, արտասանութիւն, նուագ, հայկական եւ կովկասեան պարեր եւն.։

Մուտքը ազատ է

### ԴՊՐՈՑԱՍԷՐԻ ՀԱՆԳԱՆԱԿՈՒԹԻՒՆԸ

Դպրոցասէր Տիկնանց Ընկերութիւնը պատիւ ունի ծանուցանելու յարգելի հասարակութեան թէ իր անդամուհիներէն տիկիններ Ա. Մ. Պօյաճեանի եւ Զ. Սարգիսեանի միջոցով, Մ. Նահանգներու մէջ կատարած հանգանակութիւնը տուած է հետեւեալ արդիւնքը՝ մուտք 20,546 տոլար 77, ընդհ. ծախս 4,487 տոլար 64, զուտ հասոյթ 16 050 տոլար 13։

Ընկերութեանս այս առթիւ իր հրապարակային շնորհակալիքը կը յայտնէ ազգային բարերար Պ. Մ. Գարակէօզեանի եւ անոր նախագահած պատուարժան Կեդր. Յանձնախումբին յարգելի անդամներուն, իրենց անգնահատելի ջանքերուն համար յօգուտ հանգանակութեան։

Շնորհակալութիւն նաեւ Մ. Նահանգներու ազնիւ հայրենակիցներու, իրենց գուրգուրոտ վերաբերումին համար դէպի Դպրոցասէրը եւ անոր սանուհիները։

Հանգանակութեան տեղեկագիրը իւրաքանչիւ նուիրատուի անունով մէկ առանձին պիտի հրատարակուի, կցուած Դպրոցասէրի յոբելեանին առթիւ հրապարակ ելլելիք յուշարձանին։

Ի դիմաց Դպ. Տիկ. Ընկ. Կեդր. Վարչութեան Ատենադպիր Թագուհի Դ. Պալթազարեան, Ատենապետ՝ Ե. Աւետիսեան,

### ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Տիկին Շամիլ Բէլէրեան կը փնտռէ իր եղբօրորդին Սեբաստիոյ Իշխան գիւղէն Յարութիւն Բէլէրեան, հօր անունը՝ Գրիգոր, մօր անունը՝ Սառա, 1925ին կը գտնուէր Քորֆուի (Յունաստան) ամերիկեան որբանոցը։ Իմացնել K. Margosianի, 81, Rue Rabelais, Lyon.

Լուր տուողին 200 ֆր. նուէր։ Կը խնդրուի յունահայ թերթերը կ'արտատպել։

— Կը փնտռուին Նոյեմ եւ Թաթոր Բարսեղեան կամ Բարսեղօֆ անուն երկու Հայեր, ընիկ Ալէքսանտրապօլցի, որոնք գումար մը ունին ստանալիք։ Դիմել Հայ գաղթականներու կեդր. օֆիսին՝ 71 Ave. Kléber. Paris (16).



### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Յովհաննէս Սէմէրճեան իր խորին շնորհակալութիւնը կը յայտնէ Հ. Յ. Դ. Փարիզի Քրիստափոր ենթակոմիտէին եւ ամէն անոնց որոնք անձամբ կամ նամակով ցաւակցութիւն յայտնեցին իր եղբօր ՅԱՐՈՒԹԻՒՆ ՍԷՄԷՐՃԵԱՆի մահուան առթիւ։



















IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H STEPHAN

## ԵՐԵԿՈՅԹ - ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

*ՊԷԼՎԻԼԻ ՌՈՍՏՈՄ ԼՍԱՐ. ՄԻՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԷ*

*Այս Շաբաթ իրիկուն ժամը 8.30էն մինչեւ առաւօտ,* Chalet Edouard*ի սրահներուն մէջ, 31—33* Rne Manin, 93 Ave. Secrétan *մէթրօ՝* Combat *կամ* Buttes Chaumont.

*Կը նախագահէ՝ Վ. ՓԱՍՏՐՄԱՃԵԱՆ*

*կը ներկայացուի* ՄԵՐ ԱՄԱԹԷՕՐՆԵՐԸ ԵՒ ՎԻՐԻ ՃԱՇԱՐԱՆԻՆ ՍՊԱՍԻՈՐԸ *(զաւեշտ)* ԵՒ ՀԱՅՐԵՆԱՍԲԱՂՋՈՒԹԻՒՆ

*Փոքրիկն Սիրանուշ Լուսիկեան կը պարէ հայկ. պարեր Կոփամարտի մրցում Աթանանի եւ Ֆրանսայի նախկին Շամփիոն Ժան Ֆրանսուայի միջեւ:*

*ՄՈՒՏՔ 7.50 ԵՒ 5 ՖՐԱՆՔ*

## ԵՐԵԿՈՅԹ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

*Կազմակերպուած Հ. Մ. Ը. Մ.ի Պուա Քոլոնպի մասնաճիւղին կողմէ այս Շաբաթ իրիկուն ժամը 9էն մինչեւ առաւօտ Պուա Քոլոնպի քաղաքապետական սրահներուն մէջ,* Rue des Halles.

*Կը նախագահէ Պ. ԶԱՏԻԿ ԽԱՆԶԱՏԵԱՆ*

*կը ներկայացուի՝* ՍԻՐԱՅԻՆ ՈՃԻՐ *(զաւեշտ)*

*Գեղարուեստական բաժնին կը մասնակցին Օրիորդներ Լ.* Աղաբէկեան, Աստղիկ Առաքելեան, Պ. Պ. Վ. Քնարեան, Ս. Եւազպաշեան *(երգ)*, Օր. Մինթանճեան *(դաշնակ)*, Օր. Ալթունեան*(Փարիզի քոնսէրվաթուարէն ջութակ)*, Պ. Պ. Յ. Քէօրհաճեան եւ Մ. Պոստանճեան *(հայկ. պարեր), Սկաուտական խաղեր, խմբերգ, արտասանութիւն, ճազ, եւր. պարեր, ճոխ պիւֆէ: Մուտք 10 ֆրանք*



## Հ. Յ. Դ.

*ՓԱՐԻԶ*

*ԱՆԻԻ Պուա Քոլոնպի Չէյթուն կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ Վիշապեան, Փոթորիկ եւ Եռագոյն խումբերը այս Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին* 79 Rue des Chambards (Bois Colombes)*ի սրճարանը: Խիստ կարեւոր օրակարգ: Բացակաները նկատի պիտի առնուին:*

*ՏԱԽԱՌ*

ԼԻՈՆԻ կայծակ խումբի ժողովը այս իրիկուն ժամը 8.30ին Հ. Յ. Դաշնակցութեան Գրադարանը:

ՄԱՐՍԷՅԼԻ Պատ. միութեան ընդհ. ժողովը վաղը Հինգշաբթի ժամը 2ին Գրադարանին մէջ. Օրակարգ՝ Նոր վարչութեան ընտրութիւն:

Նոր տարուան առթիւ Մարսէյլի Հ. Յ. Դ. Պատ. միութիւններու խնջոյքը վաղը Հինգշաբթի ժամը 4ին 63 Րիւ տը լա Րէփիւպլիք Գրադարանին մէջ: կը հրաւիրուին քաղաքի, Սէն Լուի, Պուլվ. Օտտօի մասնաճիւղերու բոլոր անդամները եւ պատանի համակիրները:

Սէն Լուի (Մարսէյլ) Ակնունի ենթակոմիտէի ժողովը այս Ուրբաթ իրիկուն ժամը 7ուկէսին իր սրահին մէջ: բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է:

ՄԱՐՍԷՅԼԻ Քրիստափոր ենթակոմիտէի ընդհ. ընկերային ժողովը, այս Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին, սովորական հաւաքատեղին: կարեւոր օրակարգ:

## ՑՈՒՑԱՏԵՏՐ

*ԲԱԼՈՒԻ Հայր. Միութեան Լիոնի մասնաճիւղը նոր տարուան առթիւ կազմակերպած է ընտանեկան խնճոյք մը վաղը հինգշաբթի կէսօրէն վերջ ժամը 2ին, 113* Grand'Rue de la Guillotière.

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

*— Տիկին Շամիլ Քէլէրեան կը փնտռէ իր եղբօրորդին Սեբաստիոյ Իշխան գիւղէն Յարութիւն Քէլէրեան, հօր անունը՝ Գրիգոր, մօր անունը՝ Սառա, 1925ին կը գտնուէր Քարփաւի (Յունաստան) ամերիկեան որբանոցը: Իմացնել* K. Margosian*ի,* 81, Rue Rabelais, Lyon.

*Լուր տուողին 200 ֆր. նուէր: կը խնդրուի յունահայ «Թերթերէն արտատպել:*

*— Կը փնտռուին Նոյեմ եւ Թատոր Բարսեղեան կամ Բարսեղօֆ անուն երկու Հայեր, բնիկ Ալէքսանտրապոլցի, որոնք գումար մը ունին ստանալիք: Դիմել հայ գաղթականներու կեդր. օֆիսին՝* 71 Ave. Kléber. Paris (16).

*Հայր Վարդան Հացունի (Վենետիկ), Տէր եւ Տիկ. Թագւոր Թէքքէրճեան եւ զաւակունք (Պոլիս), Այրի Տիկին Մարիամ Թէքքէրճեան եւ զաւակունք (Փարիզ), Տէր եւ Տիկին Կարապետ Թէքքէրճեան եւ զաւակը (Փարիզ), Տէր եւ Տիկին Մկրտիչ Քէհեաեան եւ զաւակը (Պոլիս), Պ. Պ. Յարութիւն եւ Պետրոս Քէհեաեան (Փարիզ), Տէր եւ Տիկին Գրիգոր Ժամկոչեան եւ զաւակը (Պոլիս), Տէր եւ Տիկին Դաւիթ Խըշիրեան (Փարիզ), Տէր եւ Տիկին Միքայէլ Ալեմշահ եւ զաւակունք (Միլան), Այրի Տիկին Հանըմիկ Ալեմշահ (Միլան), Պ. Հրաչ Բաթինեան (Փարիզ), Տէր եւ Տիկին Աւետիս Կէօզիւպէօյիւկեան եւ զաւակունք (Պոլիս), Տէր եւ Տիկին Մարտիրոս Գաբրիէլեան (Փարիզ), Տէր եւ Տիկին Իսրայէլ Ստեփանեան եւ զաւակունք (Փարիզ), սրտի խորունկ կսկիծով կը ծանուցանեն իրենց քրոջ, հարսին, կեսրոջ, մօր, մեծ մօր, մօրաքրոջ, զարմուհիին եւ ազգականին*

ԱՅՐԻ ՏԻԿԻՆ

### ՆԵԿՏԱՐ ԹԷՔԷՐՃԵԱՆԻ

*դառնաղէտ մահը:*

*Յուղարկաւորութիւնը կատարուեցաւ երէկ կէսօրէ վերջ ժամը 1.30ին Փարիզի* Saint Vincent du Paul *եկեղեցւոյն մէջ:*

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Մեր խորին շնորհակալութիւնները կը յայտնենք Հ. Յ. Դ. Վալանսի կոմիտէի եւ Փրիվայի ենթակոմիտէի բոլոր ընկերներուն եւ ամէն անոնց, որոնք անձամբ, նամակով, հեռագրով եւ ծաղկեպսակով իրենց ցաւակցութիւնը յայտնեցին մեր սիրեցեալ որդւոյն, Թոռան ու եղբօր՝

ԱՆԴՐԱՆԻԿ ՓԱՊՈՒՃԵԱՆԻ

անակնկալ եւ դառնաղէտ մահուան առթիւ:

փրիվա *Փապուճեան ընտանիք*



### ԵՐԵԿՈՅԹ-ՏՕՆԱԾԱՌ

Ա. Ե. Հ. Կ. Խաչի Տէսինի մասնաճիւղին կողմէ կաղանդի առթիւ, այսօր Դշ. իրիկուն ժամը 6—12 S. L. S. A.ի ճաշասրահին մէջ, երգ, արտասանութիւն, նուագ, հայկական եւ կովկասեան պարեր եւն.:

Մուտքը ազատ է

### ՀՐԱՊԱՐԱԿ ԵԼԱՒ

*Մարսէյլի Հ. Յ. Դ. Պատ. Միութեան «ԳՈՅԱՄԱՐՏ» օրացոյցը, ճոխ բովանդակութեամբ եւ հերոսներու նկարներով: Դիմել Ճարայեանի, 14* Rue de la Fare, Marseille. *կամ ցառաջի վարչութեան:*

*Գին՝ 6 ֆրանք, փոստի ծախքով 6.50 ֆր.:*

### Ծախու յարկաբաժին

մեկնումի պատճառաւ ծախու է յարկաբաժին մը 3 սենեակ, ջուր, կազ, ելեկտրականութիւն: Մանրամասնութեանց համար դիմել Պ. Ա. Երամեանի, 4 Impasse Lemière Գ. յարկ, մէթրօ Place des Fêtes.



### ALLIANCE FRANÇAISE

101 Bld. Raspail, Paris

*Ֆրանս. Լեզուի գործն. վարժ. ֆրանս. Լեզուի ձմեռնային դասընթացքները կը վերսկսին: Յունվ. 3ին, շաբաթը առնուազն 16 ժամ ֆրանս. Լեզուի գործն, դասեւ Հայ. Ֆրանսեր. Թարգմ, 17 դասախօսութիւն, մէկ գեղարուեստ. պտոյտ, մէկ ամիսը 155 ֆր. 4 ամիս 475 ֆր.: միմիայն դասախ. եւ պտոյտի մասնակցիլ փափաքողներու կը տրուին մասն, քարթեր գին՝ 75 ֆր.: Երեկ դասընթ. շաբաթը 5 անգ. $Բ_2$. $Գ_2$. $Դ_2$. $Ե_2$. եւ Ուր. ժ. 20—22, $Դ_2$. օր. դասընթ. յատկաց. է վաճառակ. ֆրանս.ի: Մէկ ամիսը 100 ֆր. 4 ամիսը 325: Մանրմ. դիմել տնօրէն* Rabert Dupouey*ի* 101 Bld. Raspail, Paris (6).




IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H STEPHAN